

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՃԱՆԱՎԸ

Լենինգրադի կենտրոնում, Մեծ Նևայի Պետրոգրադյան գետափին հավերժական խարիսխ է նաև, լեգենդար «Ավրորա» հածանավը: «Ավրորայի» ջրարկումը տեղի է ունեցել մեր դարի սկզբին՝ 1900 թվի մայիսի 11-ին: Իր ժամանակի համար դա հզոր հածանավ էր: Այն մասնակցել է ռուս-ճապոնական պատերազմի ամենանշանավոր՝ Ցուսիմայի ճակատամարտին, իսկ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին «Ավրորան», ֆիննական ծոցում ականազերծման և հետախուզական գործողություններ էր կատարում:

Փետրվարյան հեղափոխությունից հետո, ցարիզմը թեև տապալվել էր, սակայն իշխանությունը նորից անցել էր շահագործողների՝ կալվածատերերի և բուրժուազիայի ձեռքը: Բոլշևիկյան կուսակցությունը՝ Լենինի ղեկավարությամբ, կազմում է զինված ապստամբության կոնկրետ պլան: «Ավրորա» հածանավին առաջադրանք տրվեց. հենց որ Պետրոպավլովյան ամ-

րոցի վրա կարմիր կրակ երևա՝ անմիջապես ոչ մարտական կրակոց տալ՝ Ձմեռային պալատի ուղղությամբ: Դա ազդանշան էր լինելու Դվորցովայա հրապարակում գտնվող հեղափոխական կորքերի գրոհի համար: 1917 թվի հոկտեմբերի 25-ին, ժամը 21-ն անց 45 րոպեին, Պետրոպավլովյան ամրոցի վրա կարմիր կրակ երևաց: Հածանավի կոմիսար Ա. Բելիշևի հրամանով Ե. Օգնևը կրակեց վեց դյույմանոց հրանոթից: Վառ բոցը լուսավորեց Նևան: Բոլոր կողմերից Ձմեռա;ին պալատի վրա գրոհի նետվեցին կարմիրբանակայիններ, զինվորների և նավաստիների ջոկատները: **Հոկտեմբերի 26-ին, ժամը 2-ն անց 10 րոպեին Ձմեռային պալատը գրավվեց: Պետրոգրադում հաղթեց հեղափոխությունը:**

Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունից հետո սկսվեց «Ավրորայի» նոր կյանքը: Քաղաքացիական պատերազմի տարիներին այն մարտնչում էր հակահեղափոխականների, խռովարարների դեմ, պաշտպանում Մեծ Հոկտեմբերի նվաճումները: Հետագայում, մոտ քսան տարի լինելով Բալթյան նավատորմի ուսումնական նավերի կազմում, «Ավրորան» դարձավ ՍՍՀՄ ռազմա-ծովա;ին նավատորմի հրամանատարական կադրերի պատրաստման դարբնոց: 1927 թվին հածանավը պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով: Ինչպես մեր ողջ երկրի, այնպես էլ «Ավրորայի» խաղաղ կյանքը ընդհատվեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին: Հեղափոխության հածանավը, նրա նավաստիները բազմաթիվ սխրանքներ կատարեցին:

Լենինգրադի քաղսովետի գործադիր կոմիտեի 1944 թվի օգոստոսի 24-ի որոշմամբ, իր նախնական տեսքն ստանալով՝ կարմրադրոշ «Ավրորա» հածանավը հավերժական խարիսխ նետեց Մեծ Նևայի Պետրոգրադյան գետափում: 1956 թվին հածանավում բացվեց ռազմա-ծովային կենտրոնական թանգարանի բաժանմունքը, ուր հավաքված են «Ավրորայի» անցած ուղու մասին պատմող փաստաթղթերը:

1967 թ. «Ավրորան» պարգևատրվեց Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանով: Էքսկուրսիաներից բացի, «Ավրորայում» տեղի են ունենում հանդիսավոր արարողություններ. հոկտեմբերիկները պիոներ են դառնում, կոմերիտականները տոմսեր են ստանում, պատանիները՝ անձնագրեր: «Ավրորա» հածանավի վրա սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի երիտասարդ մարտիկները զինվորական երդում են տալիս՝ հավատարիմ լինել հայրենիքին՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությանը:





# ՀՈԿՏԵՄԲԵՐ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Տարին տասներկու ամիս,
Տասներկու եղբայրներ արի,
Սակայն ո՞վ կարող էր սպասել,
Որ ամիսը ծնունդ տա դարին:

Դժվար է հմայվել մայիսով,
Երբ աչքերը սովոր չեն լույսի,
Դժվար է տաքանալ հուլիսով,
Երբ չկա ջերմությունը հույսի:

Ամենքին անհաղորդ, անտարբեր՝
Գլորվում էր տարին տխրամած,
Եվ ահա մի հրաշք Հոկտեմբեր,
Որ ըմբոստ երգերով էր սնված,

Բարձրացավ խստաշունչ հյուսիսից,
Նոր ուղի պարգևեց աշխարհին,
Ու նրա առնական լույսերից
Հատվեցին մագիլները չարի:

Եվ հիմա՝ տարիներ հետո,
Ամիսն այդ իր գործն է անում,
Շրջում է աշխարհում իր երգով՝
Աշխարհին իր խորհուրդն է տանում:

Ժամանակը շարժվում է անվերջ...
Եվ մարդիկ՝ համբերող, անհամբեր,
Գիտեն, որ ամեն մի ամսվա մեջ
Ապրում է մի հրաշք հոկտեմբեր:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ԱՊՐԻԼՅԱՆ ՄԵԿ ՕՐ

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. ՄԱՐԻՆԵ ՎԱՂԱՐՇՅԱՆԻ

Դուք օրագիր պահելու սովորություն ունե՞ք:

Չեի ասի, թե ես կանոնավոր օրագիր պահողներից եմ: Սակայն, ինչ-որ ժամանակաշրջան, որոշ գրառումներ արել եմ: Եվ հիմա, երբ հետաքրքրության համար թերթում եմ էջերը, կարծես թե վերագտնում եմ անցած օրերի շարանը: Եվ թվում է, թե երբեմն ոտքի վրա, երբեմն հանգամանորեն գրի առնված դեպքերը կինոժապավենի նման իրենց մեջ ամփոփած պահում են անցած օրերի գույները, ձայները և մարդկային հոգու անբռնելի հուզումները:

1974 թվականի ապրիլի 16:

Ի՞նչ կարող եք պատմել դուք այդ օրվա մասին: Իսկ իմ օրագրում եզակիից-եզակի մի գրառում կա՝ չափազանց անսպասելի վերջաբանով:

Դեպքը պատահեց այսպես: Հանրային գրադարանում պարապում էի. մի պահ պատուհանից դուրս նայեցի և նկատեցի, որ Ղուկաս Ղուկասյանի անվան այգում բոցենիները ծաղկել են: Ներքին մի ուրախություն համակեց ինձ:

Այգում, իրարից մեկ-երկու մետր հեռավորությամբ, կարծես պայծառ խարույկներ բռնկված լինեին, չհանգչող խարույկներ:

Ուշադրությունս շեղվեց աշխատանքից: Եվ ես, ժամանակ առ ժամանակ, աչքս գցում էի բոցենիներին՝ իբր հանգստանում եմ. իրականում, սակայն, պայծառ դեղին այդ թփերը մագնիսի նման ձգում էին ինձ: Ի՛մ մեջ որոշեցի, որ՝այսօր չեմ կենտրոնանում. վաղն ավելի երկար կնստեմ ու այսօրվա գործըն էլ կանեմ, իսկ հիմա մի քանի րոպեով մտնեմ այգի՝ ծաղկած թփերին մոտիկից նայելու: Թղթերս հավաքեցի ու դուրս եկա:

Բոցենիները մոտիկից ավելի գեղեցիկ էին: Ոտեղից-որտեղ մտածեցի Եղիսաբեթ տատիս մասին, որին չեմ տեսել: Մայրս պատմում է, որ գարնանը, երբ դաշտից ձնծաղիկ կամ էլ հողից քիթը դուրս հանած ոռնիչ[1] էին բերում, Եղիսաբեթ տատս վերցնում էր մի հատ, կարոտով նայում էր, ապա համբուրում, քսում աչքերին, իսկ վերջում հպում էր ճակատին, ասելով՝

— Նուբա՜ր է, նուբա՜ր...

Ուղղակի արմատից ծաղկած թփերի գեղեցկությունը մի լավ վայելելուց հետո, դանդաղ գնացի այգու կենտրոնական մասը, որտեղ փոքրիկ աստղադիտարանն է՝ արծաթափայլ գմբեթով, ուսանողների ոտքի տակ մաշված տուֆե աստիճաններով և գեղեցիկ սյուներով: Աստղադիտարանի շուրջը մատղաշ խոտ էր աճել: Ծիլերը դուրս էին պրծել նույնիսկ քարե աստիճանների արանքից:

Անսպասելիորեն մի ախորժալուր ձայն ընկավ ականջս.

— Ծի՛նգ-լա՜-լա՜,

— Ծի՛նգ-լա՜-լա՜,

— Ծի՛նգ-լա՜լա՜,

— Ծի՛նգ...

Ապշած կանգ առա. այնքա՜ն քաղցր երգ էր: Ականջներիս չէի հավատում. թվո՜ւմ է, թե՛ իրոք լսում եմ: Եվ հանկարծ, ով երջանկություն, երգը կրկնվեց.

— Ծի՛նգ-լա՜-լա՜...

— Ծի՛նգ-լա՜-լա՜...

Ոչ մի կասկած չկար, որ սքանչելի երգեցիկ թռչուն էր: Կանգնեցի այն ծառի տակ, որտեղից ձայնը գալիս էր: Մտածում եմ. կամ սոխակ է, կամ դեղձանիկ: Բայց ավելի հավանական է, որ սոխակ լինի: Կարծես անտեսանելի մի ուժ ինձ գամել էր այդ սլացիկ ծառի ներքո:

Դիմացից երեք տղա էին գալիս: Նրանցից մեկը ձայնը լսեց, վեր նայեց ու՝

— Նայե՛ք, նայե՛ք, ամենաբարձր ճյուղի վրա է:

Ես ակնոցս դրեցի ու տղայի ցույց տված ուղղությամբ նայեցի. երկնքի կապույտ ֆոնին շատ բարձր ու բարակ մի ճյուղի վրա պարզ գծագրվեց սուրուլիկ գլխիկով, երկար, սուրուլիկ պոչիկով մոխրագույն թռչնակը:

Նա կարճ ընդհատումներով երգում էր.

— Ծի՛նգ-լա՜-լա՜...

Շատ վճիտ, բյուրեղյա հնչեղությամբ, մաքուր ու զրնգուն ձայն էր: Սիրտս խանդաղատանքով էր լցվել. մտքումս ասում էի. «Այս ի՜նչ աստվածային շնորհ է»:

Ծառուղի մտավ մի գեղեցիկ օրիորդ՝ երկար, սպիտակ վերարկուով: Գուցե մտազբաղ էր, ուշադրություն չդարձրեց: Ես վախեցա, որ նա կանցնի ու սոխակի երգը չի լսի: Երբ հավասարվեց ինձ, ասացի.

— Լսու՞մ եք, սոխակ է երգում:

Օրիորդը կանգնեց:

— Ո՞րը սոխակ է:

Մի րոպեի չափ լսեց, ժպտաց ու այդպես ժպտալով գնաց:

[1] Բանջարի տեսակ:



Այգու աթոռներին հատուկենտ մարդիկ էին նըստած: Իմ կարծիքով բոլորն էլ թռչունի երգն էին ունկնդրում:

Այդ որտեղի՞ց է եկել այդ քնքուշ արարածը:

Անցավ երևի հինգ-վեց րոպե: Մեկ է. երեք տղաները ետ եկան: Նրանցից մեկը փորձում էր սուլել քիչ առաջ լսած երգը, միաժամանակ, երեքը միասին հայացքով թռչնակին էին որոնում: Իսկ ես դեռ կանգնած էի և, երևի էլի կմնայի, եթե երգը չլռեր. Սոխակը, հավանաբար, հոգնեց: Ափսոսալով այգուց դուրս եկա և, տե՜ր իմ աստված, ինչպիսի ժխոր: Տերյան փողոցը լիքն էր հոնդացող բեռնատարներով և բազմաթիվ այլ մեքենաներով, կողք-կողքի շարված բարձրահարկ շենքերով, մեքենաների արտաշնչած ծխով, ասֆալտի ու ռետինի այրված հոտով: Մտքումս օրհնեցի այդ փոքրիկ թռչնակին, որ ողջ է մնացել և դեռ ապրում է: Եվ անչափ շնորհակալ էի, որ այդ աղմուկի հարևանությամբ չի կորցրել երգելու զմայլելի ընդունակությունը:

Շտապում էի հասնել խմբագրություն, պատմելու միջադեպը: Սկզբում պատմեցի Արշալույսին: Ուզում էի Մերուժանին էլ պատմել, բայց նա հեռախոսով ինչ-որ մեկի հետ հուզված խոսում էր: Եվ երբ մի պահ լռեց, հավանաբար լսելու հեռախոսի մյուս ծայրում գտնվողին, ես ասացի.

— Քիչ առաջ սոխակ եմ տեսել և սոխակի երգ եմ լսել:

Նա ինձ կարծես չլսեց: Շարունակեց խոսել:

Երբ լսափողը դրեց, ասաց.

— Հորաքրոջս տասնութ տարեկան աղջիկը թունավորվել է:

Այդ ժամանակ նա դեռ չգիտեր, որ աղջիկն արդեն մահացել է. միջանցքում այդ տխուր լուրը ես իմացա Վաչագանից, և ի՞նչն էր պատճառը, չհասկացա՝ ականջներիս մեջ դղրդաց այգու կողքով սլացող մեքենաների աղմուկը:

Երեկոյան, մինչև այս ամենի գրի առնելը ես անընդհատ մտածում էի, թե իրար հաջորդող օրերի շարանում (և ոչ միայն օրերի, այլ նույնիսկ ժամերի ու րոպեների), կյանքն ինչպիսի անակնկալներ է մատուցում մարդուն, ինչպիսի իրարամերժ ապրումներ: Եվ իմ աչքերի առջևով սահում էին ծաղկած բոցենիները, Տերյան փողոցի աղմուկը, անակնկալ մահվան գույժ լսած երիտասարդի վշտահար դեմքը: Եվ իհարկե, նաև՝ օրագրի այս էջին պահ տրված սոխակի երգի ձայնը:



# ԱՇՈՒ՜Ն

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

Աշուն է, անձրև,
Կարծես մոխրագույն ամպերի միջով
Վարգում են ձիեր
Եվ լացում չվող
Երամի համար:

Աշուն է, մշուշ,
Ասես կովեր են լեռներից իջնում
Հանգիստ ու ծանր
Ծաղելով իրենց կաթը
Խոտերին:

Աշուն է, անձրև,
Աշուն է, մշուշ,
Աշուն է, քամի,
Աշուն է ո՜ւշ...



# ՀՐԱՇԱԳՈՐԾԸ

ՆԱՐԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ



Այս դեպքը պատահեց երեկ, քնելուց առաջ: Ամբողջ օրը ոչ մի արտակարգ բան չպատահեց, իսկ երեկոյան, երբ ավարտելով ֆիզիկայի մասին մի շատ հետաքրքիր գիրք, պատրաստվում էի քնելու, սկսվեց այս անսովոր, զարմանալի պատմությունը: Գուցե պատճառը կարդացածս գիրքն էր կամ կարմիր եզան կաշուց պատրաստված, դրվագազարդ, շատ հին փոքրիկ ճամպրուկը, որը նվեր էի ստացել տատիցս: Գուցե և ոչ մի առիթ էլ չկար, այլ պարզապես իմ վառ երևակայությունն էր մեղավոր... Սակայն այդ ամենը այնքա՞ն իրական ու շոշափելի էր թվում ինձ: Մի խոսքով, ես հանգցրել էի լույսը և իմ սովորությամբ՝ ծալապատիկ նստել անկողնուս վրա: Այդպես հաճախ եմ երազում: Մեկ էլ ուշադրությունս գրավեց պատուհանից ներս խուժող լուսնի կաթնավուն շողը, որը չգիտեմ ինչից բեկբեկվելով թրթռում էր հին ճամպրուկի վրա: Լույսի այդ խաղից կաշվի վրայի խունացած նկարները մի տեսակ կենդանանում էին և հազիվ նշմարելի ստվերագծերով փախչում սենյակով մեկ: Երբ արդեն ուշադրությունս բավականին կենտրոնացած էր այդ հետաքրքիր հայտնության վրա, հանկարծ նկատեցի, թե ինչպես ճամպրուկի կափարիչը ինքն իրեն բարձրացավ և այնտեղից դուրս սողաց մի երկար ստվեր ու կպավ պատին: Սարսափելի այդ ստվերը՝ երկարահասակ, նիհար, սևազգեստ ու մռայլ վանականի տեսք ուներ: Ես այժմ զարմանում եմ, թե ինչու այն ժամանակ չվառեցի լույսը, չէ՞ որ էլեկտրական լույսի տակ այդ ամենը իսկույն կչքանար, այլ հիպնոսացած ու ամբողջովին ենթարկված դիպվածին, միայն շշնջացի.

— Ո՞վ եք դուք...

— Ես Մեմֆիսի ամենամեծ հրաշագործն եմ՝ Թութան-Մաթոն տասներկուսը,— ծոր տալով խոսեց ստվերը:

— Որտեղի՞ց հայտնվեցիք:

— Այստեղից,— ցույց տվեց նա ճամպրուկը,— հազար ու հազար տարի է, ես ապրում եմ այս կաշվե տաճարում...

— Ճամպրուկո՞ւմ,— ուղղեցի ես:

— Ճամպրուկում... Նա, ով փակեց ինձ այստեղ, կախարդական գրեր դրեց վրան, որ ընդմիշտ փակվի իմ լեզուն և ես մարդկանց չասեմ ճշմարտությունը:

— Ի՞նչ ճշմարտություն:

— Թե ինչպես են նրանք՝ տաճարի այդ մութ հոգիները՝ քրմերը, բնության ու պայծառամիտ մարդկանց ստեղծագործությունները ի չարը օգտագործում՝ խաբելու և կողոպտելու համար:

— Չեմ հասկանում, ինչի՞ մասին եք խոսում...

— Չես էլ հասկանա, զավա՛կս, այդ այնքան բարդ է... Գիտե՞ս, ես քանի տարի եմ սովորել կավե սալիկների վրա, մինչև... Բայց, եթե գաս ինձ մոտ, ես քեզ այնպիսի բաներ ցույց կտամ ու կպատմեմ, որ դու ինքդ էլ ինձանից ոչ պակաս հրաշագործ կդառնաս: Միայն երդվի՛ր երկնքի բոլոր լուսատուներով, որ այդ ամենը մարդկանց դեմ չես օգտագործի:

— Երդվում եմ այսօր և ընդմիշտ...— իր ձևով ասացի ես:

Նույն պահին, բարի հրաշագործի ստվերը պոկվեց պատից և լուծվելով կիսախավարին՝ դարձավ անտեսանելի: Հետո դաստակիս վրա զգացի նրա սառը, չոր մատների հպումը: Քիչ անց զարմանալի խորհրդավորությամբ հայտնվեցինք ինչ-որ եգիպտական տաճարում, հավանաբար՝ դա Մեմֆիս քաղաքի Իգիդա աստվածուհու տաճարն էր:

Հրաշագործը լռությամբ ինձ տարավ տաճարի ամենախուլ անկյունը, ուր մեզ ոչ ոք չէր լսի և, շարունակելով աննկատ մնալ, շշնջաց.

— Մենք այստեղ եկանք ճիշտ ժամանակին: Տե՛ս, տաճարը լցվում է մարդկանցով: Քիչ հետո տեղի է ունենալու հրաշքներից ամենամեծը՝ ճառագայթափայլ աստվածների հայտնությունը:

— Ինչպե՞ս...

— Համբերի՛ր, կտեսնես... դու շշմեցնող սուր հոտ չե՞ս զգում..

— Ծաղիկների հոտ է գալիս,— ասացի ես:

— Դրանք արբեցնող բույր ունեցող ծաղիկներ են, որ դիտավորյալ տաճար են բերվել մարդկանց թմրեցնելու նպատակով:

— Իսկ այս ի՞նչ աղմուկ է, ինչո՞ւ են շեփորում ու գոռգոռում:

— Դա էլ նույն նպատակով է, որպեսզի չնկատեն խաբեությունը:

— Ի՞նչ խաբեություն, Թութա՛ն-Մաթոն պապիկ:

— Թե ինչպես է տեղի ունենում աստվածների հայտնությունը խավար տաճարում: Ահա նայի՛ր, այնտեղ առաստաղում գաղտնի անցք կա. այժմ կբացեն և այն տանիքում՝ աստծու կերպարանք մտած քրմի շրջված պատկերը արևի ճառագայթների տակ՝ կթափանցի այդ անցքով և տաճարում կհայտնվի որպես շարժվող և խոսող մի կերպարանք: Օ՜, Իգի՛դա, այս խենթ պահին քիչ է մնում ես ինքս էլ հավատամ խաբեությանը...

— Ի՞նչ սարսափելի է...

— Բայց դու հասկացար, չէ՞, զավա՛կս, թե ինչ տեղի ունեցավ:

— Դե, իհարկե, հասկացա, հրաշագո՛րծ պապիկ,— ասացի

ես,— սա օպտիկական ամենապարզ մի փորձ է, որ ֆիզիկայում կապված է լույսի պրոյեկցիայի հետ:

— Ինչպե՞ս:

— Լույսի պրոյեկցիայի...

— Իսկ այդ ինչպե՞ս կոչեցիր ֆի-ֆիզիկա՞...

— Այո՛, ֆիզիկա: Վաղուց արդեն այսպիսի «հրաշքները» ֆիզիկայի համար գաղտնիք չեն: Նույն փորձը կարելի է կատարել նաև երկու շատ պարզ ճրագներով, եթե նրանց դնենք մեկը մյուսի դիմաց: Դու, հրաշագո՛րծ պապիկ, երևի պրոյեկցիոն ապարատ չես տեսել: Ես ուզեմ, երբ գնանք մեր տուն, քեզ համար նրանով կինոնկարներ ցույց կըտամ:

— Կի-կինո-նկարնե՞ր...

— Այո՛, իսկ քո ցույց տված այս հրաշքը ոչ միայն Եգիպտոսի քրմերին է հայտնի եղել... լույսի պրոյեկցիայի մասին գիտեին նաև հին Չինաստանում: Օրինակ, Չժաո Մեն անունով մի քուրմ մետաքսյա շղարշի վրա նույնիսկ փորձել է թագավոր Ուդիին ցույց տալ նրա մահացած կնոջ ուրվականը:

— Ա՜յ քեզ խաբեբա:

— Բայց հետո գաղտնիքը բացվել է և նրա այդ հրաշքների ցուցադրման վայրը վեր է ածվել ստվերների թատրոնի:

— Այդ ինձ դուր է գալիս: Վատ է, երբ գիտությունը խարդախ նպատակներով են օգտագործում:

— Իսկ դո՛ւք, հրաշագո՛րծ պապիկ, քուրմ չե՞ք եղել:

— Եղել եմ, ինչպես չէ. այս նույն Իզիդայի տաճարում ինչքան գիշերներ եմ արթուն անցկացրել երկնի լուսատուների շարժումը ուսումնասիրելով: Այդ ես եմ պարզել Արեգակի և Լուսնի խավարումների գաղտնիքը, թափանցել թվերի խորհրդավոր աշխարհը և էլի շատ առեղծվածներ լուծել այն գիտության մեջ, որը դու, զավա՛կս, անվանում ես ֆիզի-կա...

Բայց դրանից ի՞նչ օգուտ: Խաբեբա քրմերի խորհուրդը իմ հայտնագործությունները, մահվան սպառնալիքի տակ, գաղտնի էր պահում ժողովրդից: Օգտագործում էր նրանց վախեցնելու, կողոպտելու և փարավոններին ենթարկելու նպատակով: Նրանք իմ աստղաբաշխական աղյուսակներով սուտ բախտագուշակություններ էին անում:

— Իսկ սուրճի գավաթ չէի՞ն նայում...

— Դու, զավա՛կս, ծաղրում ես ծերուկիս: Բայց ա՛յ, հին աշխարհում էլ ֆի-զիկայի այնպիսի հրաշքներ կային որ, ավա՜ղ, ես ինքս՝ Մեմֆիսի ամենամեծ հըրաշագործս՝ Թութան-Մաթոն տասըն և երկուսս անգամ անկարող եմ բացատրել:

Եվ՝ կրկին հրաշագործը թևիցս բռնած սլացավ լուսնի կաթնագույն մշուշի միջով ու մենք այս անգամ հայտնվեցինք Հին Բաբելոնում՝ Նիպպուր գեղեցիկ քաղաքի պարիսպների տակ: Առաջին բանը, որ գրավեց իմ ուշադրությունը, դա ուխտավորների թափորն էր, որը մրգերով, բանջարեղենով, զոհաբերության թըռչուններով ու գառնուկներով բեռնըված՝ շարժվում էր դեպի Բաբելոնի ամենազորեղ ու դաժան աստված Բելի արձանը: Նրանք այս ամենից բաժին էին թողնում արձանի պատվանդանին ու հեռանալով, մոտակայքում տոնական խարույկներ էին վառում:

— Դու, ստվե՛ր պապիկ, կարծում ես այս ամենը պետք է քարե կուռքն ուտի՞,— այդ տեսնելով ասացի ես:

— Ո՛չ,— խոստովանեց հրաշագործը,— բայց չեմ հասկանում, թե ինչպես և ուր է մեկ գիշերում անհայտանում այս ամենը:

— Շատ պարզ բան է: Տե՛ս, մոտի այն տաճարը. արձանից մինչև այնտեղ ստորերկրյա գաղտնի անցուղի կա: Գիշերը, երբ շրջապատում ուխտավորները հոգնած քուն են մտնում, քըրմերը գաղտնի անցուղով գալիս են և եղածը տանում խժռում են:

— Ասենք, դա հնարավոր է,— զարմանքով նկատեց հրաշագործը:— Բայց ի՞նչ կարող ես ասել «անհատնում շատրվանի» մասին:

— Նա, որ գտնվում է հունական տաճարի պատի տա՞կ...

— Դու գիտես նաև այդ հավերժական աղբյուրի մասի՞ն:

— Գիտեմ:

— Փոքրի՛կ իմ հրաշագործ, ինչպես երևում է, քո այդ մեծ ուսուցիչ ֆի-ֆիզիկային ամեն ինչ հայտնի է...

— Հայտնի է, պապի՛կ, հայտնի է. հին ու նոր աշխարհի շատ հրաշքներն էլ այժմ բացահայտել են գիտնականները:

— Օ՜, աստվածուհի՛ Իզիդա, իսկ ես՝ ծերուկս, կարծում էի, թե հասարակ մարդկանց հավերժորեն գաղտնի կմնան իմ և ուրիշների արած հայտնագործությունները, որոնք այնպես խնամքով թաքցնում էին մոլեռանդ քրմերը: Բայց, տես, այժմ ամեն մի դպրոցական մանչուկ ավելին գիտի, քան իմ ժամանակի բոլոր քրմերը միասին... Օ՜, Իզի՛դա, Իզի՛դա...

... Մեմֆիս քաղաքի ամենամեծ հրաշագործ Թութան-Մաթոն տասն և երկուսը էլի ինչ-որ բաներ մրմնջաց ու կրկին անհետացավ տատիս նվիրած, կարմիր եզան կաշվից սարքված փոքրիկ, նկարազարդ ճամպրուկի մեջ: Իսկ ես սթափվեցի զարմանալի պատրանքներից, ամուր գրկեցի բարձըս ու գլուխս հաճույքով նրա մեջ թաղելով՝ պինդ-պինդ քնեցի...

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ





# ՀԱՑԸ

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ

Լևոնը բակ մտնելով ուրախ ձայն տվեց.

— Մայրի՛կ, մայրի՛կ...

Նրա ձեռքին մի բոքոն կար։

— Այդ որտեղի՞ց է,— անհանգստացավ մայրը։

— Ճանապարհից... Ա՛յ էս մեր տան մոտով անցնող ճանապարհին էր ընկած։

Նրանց խոսակցության վրա հավաքվեցին հարևանները։

— Ճանապարհի՞ց,— բմբիծաղ տվեց Սոնա տատը, որ մի չոր ու խիստ կին էր։— Ի՞նչ է, ճանապարհին հաց են ցանո՞ւմ, որ դու էլ գնաս գտնես։ Կա-չկա մեկի տնից թռցրել ես։

Խիստ վիրավորանքից Լևոնի աչքերը լցվեցին։

— Հայրիկի՛ արև, ճամփին էր ընկած,— շուրջը հավաքվածների մեջ պաշտպանող հայացք փնտրելով, կմկմաց նա։

Բոլորը զարմանքով իրար էին նայում։ Հացը տղայի ձեռքին ասես նույնպես զարմացել, քարացել էր, չգիտես՝ ամոթի՞ց, թե՞ խղճահարությունից։ Կար ժամանակ, երբ իր երեսին նայող էլ չկար, իսկ հիմա երեխաների քաղցած աչքերը այնպես են նայում իրեն, որ քիչ է մնում ամոթից ընկնի տղայի ձեռքից ու գետինը մտնի։

— Տեսնես ո՞վ է իր ունեցած հացը բերել ճամփին թողել ու գնացել,— նորից խոսեց հավաքվածներից մեկը,— էդ ո՞վ է էդքան շատ հաց ունեցել։

— Լավ, դրա ժամանակը չի,— առաջ եկավ Սարիբեկ պապը,— բերեք մի փոքր կտրենք տանք էս երեխին, չե՞ք տեսնում աչքերը ոնց են քաղցից պըլպըլում։

Շատերը համաձայնության նշան արին, բայց Սոնա տատը ձեռքը բարձրացրեց.

— Չէ՛, սպասե՛ք, բա որ էդ նեմեցի արած գործը լինի՞...

— Ի՛նչ նեմեց, ի՛նչ բան, ա՛յ կնիկ,— հակառակեց Շուշան ազին,— նեմեցին հիմա Ռուսաստանից են քշում դուրս, էստեղ ի՞նչ գործ ունի...

— Ունի՛, ունի՛,— իր խոսքից չնահանջեց Սոնա տատը,— նա ամեն տեղ շպիոններ է պահում, թունավորում հացը, ջուրը, խաղաղ մարդկանց վնասում։

— Ուրեմն ասում ես, որ էս հացը թունավորված կլինի, հա՞,— միաժամանակ խոսեցին մի քանիսը, ոմանք՝ վախեցած, մյուսները՝ կասկածանքով։

— Կարող է լինի,— իրենը պնդեց Սոնա տատը։

Լևոնը քիչ էր մնում հացը ձեռքից ցած գցի. ինչո՞ւ է թշնամու թունավորած բոքոնը ամուր բռնել ու կանգնել շշմածի նման...

Երևի այս տեսարանը երկար շարունակվեր, եթե հանկարծ նրանց չհասներ գյուղամիջից արագ ընթացքով եկող կատարածու Պողոսի ձայնը.

— Ա՛յ ժողովուրդ, էս ճամփին ընկած հաց չե՞ք տեսել, մի՛ բոքո՛ն հաց...

Բոլորը հանկարծ խառնվեցին իրար։

— Տեսել ենք, տեսել ենք, ի՞նչ է որ...— բարձր խոսեցին կանայք։

— Ի՞նչ պիտի լինի,— ցածր ասաց Սոնա տատը,— երևի շրջանից զանգել են, որ մեր ճամփին նեմեցը թունավորած հաց է գցել, ուզում է զգուշացնել, որ մարդիկ չուտեն։

Մինչև նրանք կփորձեին դատողություններ անել, կատարածուն տեղ հասավ և, առանց խոսքի, Լևոնի ձեռքից վերցրեց հացն ու նույն արագությամբ ետ դարձավ։

— Ա՛յ մարդ, մի ասեիր, թե էդ ի՞նչ հաց էր, ինչո՞ւ էր ճամփին ընկած,— նրա ետևից ձայնեցին զարմացած կանայք ու ծերունիները։

— Ի՞նչ հաց պիտի լինի,— արդեն հեռվից պատասխանեց Պողոսը,— կոոպերատիվի ստացած հացերից, ֆուրգոնի միջից է ընկել։ Խանութպանը տեղ հասնելով՝ նկատել է, որ մի բոքոնը պակաս է, ինձ ուղարկեց փնտրելու...

# ԵՐԿԱՐ ՇՐՋԱԳԱՐՁԵՐ ԿԱՐՃ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



— Դե՜, ձեզ տեսնեմ, արծիվնե՛ր,— ասում էր հորեղբայրս, և մենք, շխկշխկացնելով դույլը, մեկս մյուսից առաջ ընկնելով, իջնում էինք ներքնահարկից ածուխ բերելու: Օրումեջ ձյուն էր գալիս, առավոտյան դուռը բացում էիր, շեմքը չէր երևում, ոչինչ չէր երևում, միայն ձյո՜ւն, ձյո՜ւն, ձյո՜ւն, և թարմ հետքեր ձյան վրա, որ շեմքից սկսվում, ավարտվում էին դարպասի մոտ՝ հայրս էր լույսը չբացված աշխատանքի գնացել, հորեղբայրս, շեմքին կանգնած, ձեռքերը գրպանում, ասում էր.— Սեպուհնե՛ր, հապա մի ձե՜վ տեսնեմ,— բահը ձեռքից-ձեռք էր անցնում՝ ես Մնացականից էի խլում մաքրում, Մնացականն ինձանից, և շեմքից դարպաս շուտով ձգվում էր գործավուն մի նեղ արահետ: Ձմեռն այդ տարի ցուրտ էր, վառարանը չէր կարողանում տաքացնել միանգամից կրկնապատկված մեր բազմանդամ ընտանիքը, տքնում էր՝ հանգիստը մոռացած, նույնիսկ կեսգիշերին ցուցադրելով կարմիր կողեր ու կլոր հրաշեկ աչքեր, բայց ցուրտը գալիս էր պատուհաններից, դռներից ու պատերից, և ցուրտն ու տաքությունը թշնամի բանակների պես ընդհարվում էին մեր տան բոլոր անկյուններում: Այդ ձմեռ ի՜նչն էր շատ մեր տանը՝ աղմուկը, ի՜նչն էր երկար՝ երեկոները: Մեր փոքր քույրերը նվնվում էին ու բոլորն մեկ լաց լինում, մեր հայրերը վիճում էին ու խաղաղ կրուցում, մայրերն օրոր էին ասում մեր քույրերին ու բարկացած ճչում մեզ վրա, ես ու Մնացականը կռվում էինք ու հաշտվում, այդպես երեկոն երկարում էր, գուցե խորը գիշեր դառնում (մինչև հիմա էլ չգիտեմ, որտեղ է երեկոյի ու գիշերվա սահմանը), և վերջապես հորեղբայրս նկատում էր մեզ.— Քաջե՛ր, գրավե՛ք անկողինները,— հրամայում էր նա, իսկ անկողնում տաք էր, քիչ հետո ես այլևս չէի փչաքաղվում ու սրթսրթում:— Սկսի՛ր,— ասում էի,— Մնա՛ց,— և հորեղբորորդիս բացում էր հերթական հեքիաթի կըծիկը: Մնացականը պատմում էր, հետո քնում հեքիաթի կեսին, իսկ ես մինչև ականջներս վերմակի տակ մտած, բաց դռնից դիտում էի մեծերին ու լսում նրանց խոսակցությունը:

— Ես վերադարձել եմ ընդմիշտ,— ասում էր հորեղբայրս:

— Առաջին անգամ չեմ լսում,— պատասխանում էր հայրս:

— Այս անգամ խոսքս հաստատ է:

— Երանի՜ թե այդպես լիներ,— հառաչում էր հայրս:

Հորեղբայրս քառասունհինգ տարեկան էր, և Հայաստանում չէր մնացել որևէ շրջան, որտեղ նա ապրած ու աշխատած չլիներ: Համենայն դեպս, եղել էր այն բոլոր վայրերում, որտեղ թերի բարձրագույն կըրթությամբ ուսուցչի կարիք էր զգացվել, կամ (ինչպես հայրս էր ասում) հեռացել էր այն բոլոր վայրերից, որտեղ նրա կարիքը չէին զգում: Հորեղբայրս շրջում

## ՍԱՐԵՐ

ԳԵՎՈՐԳ ՋԱՐԵՆՑ

**Երկինք մտած սարեր,**
**Աստղեր գտած սարեր,**
**Մերթ յույսերի հեղեղ,**
**Մերթ մթամած սարեր,**

**Ձեր ուսերին պահած**
**Քանի՜-քանի՜ դարեր,**
**Բայց դուք էլի կանգուն**
**Ու միշտ ջահել սարեր:**



էր ընտանիքը եռանից գցած և ոչ մի տեղ խարխափ չէր գցում, որովհետև չէր գտնում փնտրածը կամ (դարձյալ հորս ասելով) որովհետև ինքն էլ չգիտեր ինչ է փնտրում: «Այսքա՜ն էլ անհանգիստ մարդ,— պարմացած բացականչում էր հայրս, երբ հորեղբայրս այսօր Սիսիանից էր նամակ գրում, մեկ ամիս անց՝ Նոյեմբերյանից:— Եթե ես մշտական աշխատանք չունենամ կամ սեփական հարկիս տակ չլինեմ, մի օր էլ չեմ դիմանա: Ինչ ուզում եք ասեք, բայց եղբայրս խիպախ մարդ է:

— Թերի բարձրագույն կրթությամբ Երևանում դժվար է ուսուցչի տեղ ճարել,— ասում էր հայրս:

— Կրթությունը երկրորդական է,— պատասխանում էր հորեղբայրս,— լավ մասնագետի կարիք ամեն տեղ կա, նույնիսկ Երևանում:

Կամաց-կամաց արթուն էին մնում միայն մեր հայրերը, իսկ ես, քնելով հանդերձ, կարծես թե չէի քնում, չքնելով հանդերձ, այնուամենայնիվ, օրորվում էի քնի ալիքների վրա, և այդ ծույլ ու տաք երանության մեջ հորեղբորս ձայնը մերթ հեռանում էր, մերթ նորից մոտենում, մերթ ես ընկղմվում էի խավարի մեջ, մերթ բաց դռնից նորից տեսնում հորս ոտքերը՝ հանգստի կարոտ մեկնված սեղանի տակ: Հորեղբորս ձայնը օրորում էր ու պահում, անկողինը օրորում էր ու տանում, և երբ հերթական անգամ դուրս էի պրծնում անդունդից, ի պարմանս ինձ, ականջներս ոչինչ չէին կարողանում որսալ, իսկ աչքերս, խավարում երկար թափառելուց հետո, պատի վրա արծաթե քառանկյունի էին գտնում: Ես նայում էի վախեցած ու հիացած՝ չգիտեի թե Մնացականի պատմած կախարդական ամրոցն եմ ընկել, և վերջապես հասկանում էի, որ այդ լուսաբացն է ներկել եղյամով պատած ապակիները:

Ընդհանրապես այդ ձմեռն ամեն ինչով անսովոր էր ու հրաշալի: Առաջին ձյունը Նոր տարվա գիշերը եկավ, առավոտյան բեռնատարով ժամանեց հորեղբորս ընտանիքը, արձակուրդներից հետո ես սկսեցի դպրոց հաճախել հորեղբորորդուս ուղեկցությամբ, իսկ ամենապարմանալին այն էր, որ այդ ցուրտ ու ձյունոտ հունվարին, տոնական ուրախ սեղանի շուրջը հորեղբայրս անսպասելի հայտարարություն արեց:

— Մենք սերում ենք հին նախարարական տոհմից,— ասաց նա:

— Դո՞ւ,— հարցրեց հայրս, շուրջը նայելով ու երևի այդ պատվին արժանի թեկնածու չգտնելով:

— Մե՛նք,— ճչաց հորեղբայրս,— Մնացականյաննե՛րս:

— Մնացականյաններս,— կրկնեց հայրս,— Մնացականյան,— ասաց քիչ հետո, կարծես մեր ազգանունն առաջին անգամ էր լսում:— Չէ՛,— ասաց հայրս,— այդպիսի նախարարական տուն չեմ հիշում:

— Մենք սերում ենք Մամիկոնյաններից,— ասաց հորեղբայրս:

— Մամիկոնյան,— ասաց հայրս:— Մամիկոնյան— Մնացականյան,— մեքենայաբար կրկնեց նա:

— Կամ՝ Բագրատունիներից,— թեք ընկնելով, ասաց հորեղբայրս:

Հայրս, չգիտես ինչու, ավելի մռայլվեց ու տխուր ասաց.

— Ես ոչինչ չգիտեմ:

Մեկ՝ անսպասելի նորությունից ցնցվածներիս ու ապշածներիս, հորեղբայրս այսպես ստուգաբանեց մեր ազգանունը: Միջին դարերում, երբ մնացել է վերջին Մամիկոնյան իշխանը (կամ Բագրատունի), նա փոխել է ազգանունը (թեև մեր պատմիչներն այդ մասին, չգիտես ինչու, լռում են), դարձրել Մնացականյան, այսինքն՝ միակ մնացած, վերջին Մամիկոնյան (կամ Բագրատունի): Բայց հորեղբորս ստուգաբանությունն այնքան էլ հռետորական չէր, որքան մեկ թվաց առաջին հայացքից: Հորեղբայրս մեր ազգանվան մեջ կարողացավ ավելի խորն իմաստ տեսնել. Մնացականյան, այսինքն, մնացող, երբեք չանհետացող:

— Ապացույցներ կա՞ն,— սթափվելով հարցրեց մայրս:

— Ապացույցնե՞ր,— հոնքերի տակից նայեց հորեղբայրս,— բայց մի՞թե դա կարևոր է:

— Իսկ ի՞նչն է կարևոր,— հարցրեց մայրս:

— Ի՞նչը,— հորեղբայրս գլուխը ետ գցեց:— Հարցնում եք՝ ի՞նչը,— նա մեկ նայեց, թեև մենք ոչինչ չէինք հարցրել:— Ոգի՛ն,— ասաց հորեղբայրս:

Ամռանը, արձակուրդների ժամանակ, ես կարդացել էի «Սամվելը» և հիմա ինձ անմիջապես պարզ դարձավ, որ մենք սերում ենք Մամիկոնյաններից: Հորեղբայրս ամեն ինչով նման էր քաջ սպարապետ Վասակ Մամիկոնյանին՝ վտիտ էր, կարճահասակ ու առյուծասիրտ: Ես անհամարձակ հայտնեցի իմ կարծիքը՝ մենք սերում ենք Մամիկոնյաններից, և հորեղբայրս ոգևորվեց:

— Դո՛ւ,— ասաց նա,— դեսուդեն մի՛ նայիր, դո՛ւ: Ի՞նչ ես զգում, երբ քեզ ասում են՝ Մնացականյան:

— Չգիտեմ,— ասացի ես:

— Լա՛վ մտածիր,— ասաց հորեղբայրս,— ազնվորեն, առանց ամաչելու ասա՛, ի՞նչ ես զգում:

— Ոչինչ,— պատասխանեցի ես:

— Չի կարող պատահել, չեմ հավատում: Մնացականյա՞ն,— գոռաց հորեղբայրս:

Ինձ ազգանունով կանչում էին միայն դպրոցում, կանչում էին դասը պատասխանելու, կամ նկատողություն էին անում, և ես ազնվորեն խոստովանեցի.

— Դողում եմ:

— Դողո՞ւմ ես,— կարմացավ հորեղբայրս, այնքան կարմացավ, որ ոտքի կանգնեց:— Հա՛, հասկանում եմ,— սեղանի շուրջը մեկ-երկու պտույտ անելուց հետո, հանկարծ պայծառացավ նա,— երևի դողում ես հուզմունքից:

— Այո՛,— ասացի ես:

— Կեցցե՛ս,— գովեց հորեղբայրս,— քանի՞ կոպեկ արժի այն մարդը, որն իր ազգանունը լսելիս չի հուզվում:— Դո՛ւ,— դարձավ Մնացականին,— դու ի՞նչ ես զգում: Մնացականյա՞ն:

Հորեղբորորդիս ոտքի թռավ և զինվորի պես ձգված բղավեց.

— Հպարտություն:

— Կեցցե՛ս,— ասաց հորեղբայրս,— երկո՛ւսդ էլ կեցցեք: Գետի՞նը մտնեք երկուսդ էլ,— գոռաց հորեղբայրս,— ինչպե՞ս եք համարձակվում վատ սովորել:

— Իմ տղան հարվածային է,— պաշտպանեց ինձ մայրս:

— Հարվածային է նա, ով չի կարողանում գերազանցիկ դառնալ,— ասաց հորեղբայրս:— Դո՛ւ,— ասաց նա ինձ,— դո՛ւ,— ասաց Մնացականին,— ավելի լավ է երկուսդ էլ գետինը մտնեք, քան թույլ տաք, որ որևէ Պողոսյան կամ Պետրոսյան ձեզանից լավ սովորի: Այս տարի երկուսդ էլ պիտի գերազանցիկ դառնաք:

Այսպես ուրեմն, մենք սերում էինք Մամիկոնյաններից, հորեղբայրս ջրի երկու կաթիլի պես նման էր Վասակ սպարապետին (հատկապես, երբ գլուխը հպարտ ետ գցած, թևերը մեջքին դրած ճեմում էր և բարկացած ու եռանդով մենախոսում), իսկ հորեղբորորդիս միանգամից թե՛ Մնացականյան էր, թե՛ Մնացական: Ահա թե ով էր շահել, ահա թե ում բախտն էր բերել, և ասես անունը բավական չէր, Մնացականը խոստանում էր հորեղբորս նման փոքրամարմին լինել՝ ինձանից մի ամիս շուտ էր ծնվել, բայց ուսից էր:

— Մա՛,— հարցնում էի ես,— ինչո՞ւ Մնացականի նման փոքրիկ չեմ,— և մայրս, իմ հոգսերին անհաղորդ, պատասխանում էր.

— Որովհետև ինձ ես քաշել:

Գուցե դա ճիշտ էր, բայց ճիշտ էր նաև այն, որ հայրս մի գլուխ բարձր էր եղբորից ու երևի կրկնակի անգամ ծանր:

— Իսկ հայրիկն ո՞ւմ է քաշել,— հարցնում էի ես, և մայրս ասում էր.

— Չգիտեմ, հորդ բախտը պարզապես բերել է:

Բայց ես մի ամբողջ ձմեռ բախտի մասին բոլորովին այլ տեսակետ ունեի, և սրտիս խորքում հույս էի փայփայում, որ Մնացականը բոյ կքաշի, իսկ ես կմնամ այնպես, ինչպես կամ: Բայց ես՝ ո՞ւր, Մնացականն՝ ո՞ւր: Ես վերջացնում էի պատմությունը, անցնում էի աշխարհագրությանը, վերջապես՝ լեզվին, իսկ Մնացականը դեռ նստած էր լինում պատմության դասագրքի առաջ: Ես դասս լավ գիտեի, բայց երբ տալիս էին ազգանունս, դողում էի, Մնացականը չգիտեր, բայց աչքն էլ չէր թարթում: Ես «երեք» էի ստանում, վախենում էի հորս աչքին երևալ՝ իմ բարի ու խաղաղասեր հոր, Մնացականը, «երկուսները» օրագրում, հանգիստ նստում էր հորեղբորս կողքին ու հեքիաթներ կարդում: Ըստ երևույթին, ինձ պակասում էր այն սառնասրտությունն ու կամքի ուժը, առանց որի ավելի լավ էր Մնացականյան չծնվել: Բայց ես ծնվել էի այդ ազգանվան տակ, չէի կարող հրաժարվել, հրաժարվելու միտք էլ չունեի, եթե ինձ վիճակված չէր իսկական Մնացականյան լինել, ապա թող գոնե արտաքուստ Մնացականյան երևամ: Ես նախանձում էի հորեղբորս ու Մնացականին, խղճում ինձ ու հորս, նրանք մանր-մունր էին, մենք՝ բարձրահասակ, նրանք չէին աշխատում ու սովորում, մենք աշխատում էինք ու սովորում, բայց նրանք Մնացականյան էին ոտքից գլուխ, մենք միայն ազգանունով, կարճ ասած, իմ միակ հպարտությունն ու մխիթարությունը այդ ազգանունն էր:

Ամբողջ ձմեռ ես հպարտությամբ դպրոց էի տանում ու բերում իմ փառք ու պարծանք ազգանունը, և եթե մինչև հիմա ոչ ոք չէր հիացել, ոչ ոք չէր նախանձել, գուցե հենց այդ անտարբերությունն էր հիացմունքի ու նախանձի նշան՝ իբր չեն լսել, իբր չգի-

տեն, որ ես Մնացականյան եմ: Բայց եթե ազգանունս հնարավոր էր չնկատելու տալ, Մնացականը կենդանի ապացույց էր, իմ տոհմական պատկանելության վկան, ինչքան էլ մանր լիներ, նրան անհնարին էր չտեսնել, հենց թեկուզ փոքրության պատճառով: «Փոքրի՛կ, դու ի՞նչ ես անում յոթերորդ դասարանում»,— հունվարյան արձակուրդներից հետո դասարան մտնելով՝ մի մարդու պես հարցնում էին ուսուցիչները, և իրոք, Մնացականին հինգերորդ դասարանից ավելի չէիր տա: Այդ հանգամանքն ավելի էր մեծացնում նրա փառքը: Հորեղբորորդուս հռչակը շրջում էր դպրոցով մեկ, նրան տեսնելու էին գալիս նույնիսկ տասներորդ դասարանցիները, որովհետև տասներորդցիների մեջ անգամ մեկը չկար, որ Մնացականի կեսի չափ դպրոց փոխած լիներ: Մնացականը սկսել էր դպրոց հաճախել Ապարանում, բայց առաջին դասարանն արդեն Գորիսում էր ավարտել: Հաջորդ երեք տարիներին Մնացականը սովորել էր Սիսիանում ու Ղափանում, Նոյեմբերյանում ու Կրասնոսելսկում: Հորեղբորորդուս կենսագրության ամենափայլուն էջն էր հինգերորդ դասարանը: Այդ ուսումնական տարին նա սկսել ու վերջացրել էր Աշտարակի, Վեդու և Ղուկասյանի հինգ գյուղերում: Եվ վերջապես, Սևանի, Հրազդանի և Արթիկի գյուղերում սովորելուց հետո, հորեղբորորդիս յոթերորդ դասարանի երկրորդ կիսամյակն սկսում էր Երևանում: Պատմելիս Մնացականը միշտ չէ, որ կարողանում էր պահպանել հերթականությունը, և հորեղբորորդուս անօրինակ ոդիսականը պտտեցնում էր նույնիսկ կյանքում շատ բան տեսած տասներորդցիների գլուխը:

Այդպես ձմեռն անցավ, իսկ գարնանային արձակուրդներից առաջ մեր դասղեկը Մնացականից պահանջեց ոտքի կանգնել: Մեր դասղեկը նայեց լուսամուտից դուրս, հետո մեզ նայեց, ու մենք տեսանք, որ մեր դասղեկի աչքերը ծիծաղում են: Ծիծաղում էին, այդ մենք տեսանք, մի տեսակ խորամանկ, մի տեսակ բարի, մի տեսակ տխուր: Մարտ ամիսն էր, բակում ձյունն ուզում էր հալվել ու չէր կարողանում, չէր հալվում, բայց, չգիտես ինչպես, օրեցօր պակասում էր, և ձյան շերտն այսօր ավելի բարակ էր լինում, քան երեկ: Մենք մեր դասղեկի հետ նայեցինք լուսամուտից դուրս, հետո նրա հետ միասին՝ Մնացականին, որս նրա ծոծրակին, որս քիթումռութին, և ես մտքումս ասացի՝ տե՛ս հա, Մնա՛ց, քեզ տղամարդու նման կպահես: Ներքևից վերև ես տեսա հորեղբորորդուս դեմքը՝ նիհար, գունատ ու հիմա ավելի գունատված, անհանգիստ, վախեցած աչքերը ու հիմա ավելի վախեցած: Բայց Մնացականը չէր ծռվում, չէր երկուտակվում նստարանի վրա, նայում էր ուղիղ իր դիմաց, և ես ինքս ինձ սիրտ տալու համար ասացի մտքումս՝ ոչինչ, որ Մնացի մատները դողում են, ոչինչ, որ շրթունքները դողում են, ո՞վ լիներ նրա տեղը, որ իրեն այսպես պահեր. ոչ ոք, իհարկե, ոչ ոք, ո՛չ ես, ո՛չ էլ մեկ ուրիշը: Քաջը նա չէ, որ չգիտե վախն ինչ բան է, այլ նա, որ վախենում է, բայց կարողանում է հաղթահարել: Եվ ես ասացի, իհարկե, մտքումս՝ «Դե քե՛զ տեսնեմ, Մնա՛ց, զարմացրո՛ւ սրանց, թող իմանան ում հետ գործ ունեն»: Մինչ այդ մեր դասղեկն ասել էր. «Չգիտեմ, ինչպե՞ս ենք վարվելու Մնացականի հետ»: Ասել էր. «Ի՞նչ ես մտածում անել, Մնացակա՛ն»,— հիմա հեռացավ լուսամուտից, կանգնեց մեր դիմաց, առաջվանից էլ ավելի խորամանկ, բարի ու տխուր էին ծիծաղում նրա աչքերը, և մեր դասղեկն ասաց.

— Ինչպես երևում է, Մնացականը որոշել է մեր դպրոցում արդարացնել իր անուն-ազգանունը:

Ես զարմացած ու հանկարծակիի եկած՝ մտքումս կրկնեցի մեր ազգանվան նոր ստուգաբանությունը: Մնացականյան, այսինքն, մնացող, նույն դասարանում մնացող, մտածում էի ես ու թշնամաբար նայում հորեղբորորդուս գունատ ու թափանցիկ կիսադեմին: Մնացականը նայում էր ուղիղ, գլուխների վրայով գրատախտակին ու գրատախտակից վերև, և նրա բարակ ռունգերը դողում ու թրթռում էին: Ես ձգվեցի, համարյա պառկեցի նստարանին ու տեսա, որ Մնացականի աչքերում լճանում է արցունքը, որ նրա աչքերում լույսը թույլ ծիածան է կապում, որ թարթիչներն, ուր որ է, չեն դիմանա արցունքի ծանրությանը, և արցունքը կկաթի այտին, իսկ եթե կաթեց, Մնացականն այլևս չի կարողանա իրեն զսպել, և ասացի մտքումս՝ «Մնա՛ց, չիմանամ թե լաց լինես, խայտառակ չանես, Մնա՛ց, եղածն էլ հերիք է»: Մտքումս ես ուրիշ բան էլ ասացի՝ վատ չի լինի, եթե մի քիչ դիպչեն Մնացականի քթին, թե չէ շատ էր բարձր քիթը, իրեն, ուր էր հասնում, ճանճն ընկներ, հազար կտոր կլիներ: Բայց ես պետք է պաշտպանեի հորեղբորորդուս, նրա պատիվը իմ պատիվն էր, հանձին իմ անարժան հորեղբորորդու ես պետք է փրկեի հորս, հորեղբորս, մեր ողջ փառապանծ տոհմի պատիվը:

— Ետ չնայե՛ք,— ֆշշացի ես դասընկերներիս ծոծրակներին,— ի՞նչ եք աչքներդ չռել,— շուռ գալով շշնջացի մեր աղջիկների ու տղաների երեսին:— Հը՞, ո՞նց ես, Մնա՛ց,— քաշեցի հորեղբորորդուս փեշից.— դիմանո՞ւմ ես:— Մնացականը գլուխը թեքեց, վերևից ներքև նայեց ինձ, այսինքն, ուզում էր նայել, բայց աչքերը ոչինչ չէին տեսնում, լճացել փակվել էին: Թարթիչները դեռ մի կերպ պահում էին լճացած արցունքը, բայց որ ոչինչ չէր տեսնում, դա վատ էր, շատ վատ: «Կարծես ինքն իր հետ լինի,— մտածեցի ես,— մի պահ կմոռանա, որ իրեն նայողներ կան, հոգնել է, դժվար է, մի պահ կթուլացնի իրեն, իսկ եթե հանգստանալ, թեթևանալ ուզեց՝ արցունքները միանգամից կհոսեն, արցունքների հետ փղձուկը կբարձրանա, և Մնացս կսկսի հեկեկալ»: Մատները չգիտեին ինչ է իրենց պետք, բայց կուրացած փնտրում

էին նստարանի վրա, իսկ ես գիտեի, թե ինչ՝ օգնություն, և ինձ ասացի. «Եթե պիտի օգնես Մնացին, իսկական ժամանակն է, հետո ուշ կլինի»:

— Կարևո՞ր է,— ես ձեռք չբարձրացրի, ծանր ու դանդաղ, ծույլ ու հանգիստ բարձրացա և նայեցի մեր դասղեկի աչքերի մեջ:

— Խնդրեմ,— մեր դասղեկի աչքերը ժպտացին, ասաց,— տեսնեմ, ինչո՞վ կարող ես օգնել եղբորդ:

— Կպարապեմ Մնացի հետ,— ասացի ես:

— Ինձ թվում է, մեկ ուրիշն այդ բանը քեզանից լավ կանի,— ասաց մեր դասղեկը:

Ես ինձ նայել էի հորեղբորս աչքերով, համոզվել, որ մեծ գործ եմ կատարում, համարյա անձնազոհության նման մի բան, որին ընդունակ է միայն իսկական Մնացականյանը, հիմա մեր դասղեկին հորեղբորս ականջներով լսեցի և իմ մեջ իսկույն գտա պատասխանը՝ այդ էր պակաս, որ Մնացի հետ պարապի որևէ Պողոսյան կամ Պետրոսյան:

— Ինձանից բացի, ոչ ոք գլուխ չի հանի Մնացից,— ասացի ես:

— Այդ ինչո՞ւ,— խիստ հարցրեց մեր դասղեկը:

Ես ինքս էլ չգիտեի, թե ինչու, բայց մի բան պիտի ասեի:

— Մնացը միայն ինձ է լսում:

— Մի՞թե:

— Մնացին այդքան սուսուփուս մի՛ կարծեք,— ասացի ես:

— Մնացականին,— ուղղեց դասղեկը:

— Նա դասի ժամանակ է խելոք երևում:— Պե՞տք է բարձրացնեի հորեղբորորդուս խարխլվող հեղինակությունը, թե՞ ոչ:— Մնացին խեղճ մի՛ կարծեք, դպրոցից դուրս նա առյուծ է կտրում: Հարցրե՛ք ում ուզում եք. Մնացը միայն ինձ է ենթարկվում:

— Մնացականը,— ուղղեց դասղեկը և խստությունը նրա աչքերից անհետացավ, ընդհակառակը, կարմացած-կկոցված աչքերով թերահավատությամբ դիտեց իմ հորեղբորորդու թշվառ կերպարանքը, և ես անհանգստացա, որ նա չի հավատա, թե Մնացականն ընդունակ է ծեծելու որևէ մեկին:

— Բացի այդ,— ասացի,— Մնացը շարունակ աչքիս առաջ է, ոչ ոք ինձանից լավ չի կարողանա հետևել նրան:

— Պատկերացնո՞ւմ ես, թե դա ինչպիսի պատասխանատվություն է,— հարցրեց մեր դասղեկը:

— Պատկերացնում եմ,— ասացի,— աչքս Մնացից չեմ կտրի:

«Սպասի՛ր, Մնա՛ց,— մտածում էի ես տեղս նստելով,— դու քո ճաշն ուտելու ես, սպասիր մի տուն հասնե՞նք...» Բայց տանը հորեղբայրս զարմացրեց ինձ: Նա ինչպես նստած էր, այդպես նստած էլ մնաց, նույնիսկ գլուխը չթեքեց, նույնիսկ թերթը ցած չդրեց, միայն ասաց.

— Մանուշակ:

Հորեղբորս կինը, մի տարեկան երեխան գրկին, ներս ընկավ, փոքր ու կլորիկ գլորվեց սենյակի մի անկյունից մյուսը, վերջապես ճիշտ ուղղություն վերցրեց, գլորվեց Մնացականի վրա և ազատ ձեռքով շըրըխկացրեց նրա իշխանական ծոծրակին: Երեխան սկսեց ճչալ ու լաց լինել, հորեղբորս կինը՝ ճչալ ու թուքումուր թափել Մնացականի գլխին, մյուս սենյակից նրանց ձայնակցեց քույրս, ապա մայրս՝ իր օրորով, իսկ հորեղբայրս շարունակում էր կարդալ:

— Բավական է,— վերջապես ասաց հորեղբայրս, թափահարեց ձեռքը, ձեռքի հետ՝ թերթը, հորեղբորս կինը, ինչպես եկել էր, այդպես գլորվեց դուրս:— Մընացականյաննե՛ր,— հորեղբայրս թերթը շպրտեց սեղանին ու ոտքի կանգնեց:— Ուկա՞ն Մնացականյան,— արհամարհանքով ասաց նա:— Ո՛չ, Մնացականյաններ չկան, մնացել է ստվերը, անունը կա, բայց իրենք չկան: Ամոթ և խայտառակություն:

Հորեղբորս պոռթկումը կարճ տևեց: Ճիշտ է, նա չնստեց ու թերթը նորից ձեռքը չառավ, բայց ամբողջ երեկո մտահոգ տեսքով մի անկյունից մյուսն էր քայլում: Ընդ որում, Մնացականը չէր փախել տնից, չէր թաքնվել, նույնիսկ չէր փորձում հոր աչքին քիչ երևալ, ընդհակառակը, նստել էր նրա քթի տակ ու արկածային վեպ էր կարդում, այն դեպքում, երբ ես ճըգնում էի մի շատ բարդ խնդրի վրա: Ես դեռ հույսս չէի կորցրել, ինձ թվում էր, հորեղբայրս դիտավորյալ է ուշացնում պատիժը, հորեղբայրս բարկանալու փոխարեն ավելի մտահոգ ու տխուր էր դառնում:

— Մո՛տ արի,— վերջապես խոսեց նա,— երբ երկուսով էինք մնացել սենյակում: Ես մոտեցա, և հորեղբայրս ասաց.— Դու նո՞ւյնպես կարծում ես, որ Մնացականը չի փոխադրվի:

— Չգիտեմ,— ասացի,— դասղեկն ասաց, որ չի փոխադրվի, հինգ առարկայից «երկուսներ» ունի:

— Գուցե կուղղի՞ մինչև տարեվերջ,— հույսն աչքերում հարցրեց հորեղբայրս:

— Դասղեկն ասաց՝ եթե այսպես շարունակի, չի ուղղի:

— Դու խոստացել ես պարապել Մնացականի հետ,— ասաց հորեղբայրս,— այդպե՞ս է:

Խոստացել էի, որպեսզի Մնացականը չընկնի որևէ Պողոսյանի կամ Պետրոսյանի ձեռքը, խոստացել էի, որպեսզի ստորացումից փրկեմ մեր ազգանունը, բայց մտքովս չէր անցել, որ պետք է իսկապես պարապեմ Մնացականի հետ: Ես գլխով արեցի:

— Ուրեմն, պարապի՛ր,— ասաց հորեղբայրս,— իմ ամբողջ հույսը դու ես: Վարվի՛ր նրա հետ, ինչպես կկամենաս, որդուս քեզ եմ հանձնում:

*(Վերջը հաջորդ համարում)*

Թևավոր խոսքեր

## ՁԵՌՆՈՑ ՆԵՏԵԼ

Միջնադարյան ասպետները երբ մենամարտի էին հրավիրում միմյանց, ձեռնոց էին նետում գետին՝ իրենց առաջ:



Ձեռնոցը բարձրացնել գետնից՝ կնշանակեր ընդունել մարտահրավերը:

Ավելի ուշ շրջանում ազնվականները մենամարտի հրավիրելիս ձեռնոցը նետում էին հակառակորդի ոտքերի տակ:

Այժմ «ձեռնոց նետել» արտահայտությունը նշանակում է ինչ-որ մեկին վեճի, մրցության, պայքարի հրավիրել, թեպետև, հասկանալի բան է, ոչ մեկը ձեռնոց չի նետում և ոչ էլ բարձրացնում:

## ԴԱՆԱՅՈՒՀԻՆԵՐԻ ՏԱԿԱՌԸ

Վերադառնանք հունական առասպելներին: Լիվիայի արքա Դանայոսը հիսուն չքնաղ դուստր ուներ: Եգիպտոսը՝ Եգիպտոս երկրի արքան, ուներ հիսուն գեղատես որդի և ցանկանում էր, որ նրանք կնության առնեն Դանայոսի դստրերին: Դանայոսը չէր կամենում այդ: Նա կառուցում է մի նավ և աղջիկների հետ Արգոս փախչում: Սակայն այստեղ էլ նրանց ետևից հասնում են Եգիպտոսի զավակները: Այդ ժամանակ Դանայոսը աղջիկներին հրամայում է ամուսնական խնջույքից հետո սպանել իրենց ամուսիններին: Այդպես էլ վարվում են բոլորը, բացի մեկից՝ Հիպերմնեստրայից, որ ջերմ սիրով սիրում է պատանի Լինկեոսին:

Աստվածները խիստ զայրանում են Դանայոսի դուստրերի չարագործության վրա և սոսկալի պատիժ սահմանում քառասունինը դանայուհիների համար: Ըստորերկրյա մթին դժոխքում՝ Տարտարոսում նրանք ջանում են լցնել անհատակ մի տակառ, որ չի պահում մի կաթիլ ջուր անգամ: Իսկ մենք «Դանայուհիների տակառ» ենք անվանում ամեն մի աննպատակ, անվերջանալի աշխատանք:

Հետաքրքիր է ավելացնել, որ հին հունական Արգոս քաղաքից ոչ հեռու, ուր ըստ առասպելի տեղի էր ունեցել այդ արյունահեղ հանցագործությունը, ծովի հատակը կլանում է ահռելի քանակությամբ ջուր, որ կորչում է անհետ: Չնայած գիտնականների բոլոր ջանքերին, Կեփալոս կղզու մոտ «կորչող» ջուրը հայտնաբերել չի հաջողվում, թեպետ այդ անդունդը կլանում է օրական 30 հազար տոննա ջուր:

Այս երևույթը չէ՞ արդյոք հին հույներին հուշել դանայուհիների անհատակ տակառի առասպելը:



## ԲՈՒՐԻԴԱՆԻ ԱՎԱՆԱԿԸ

Երբեմն որևէ մեկի մասին ասում են. «Նա Բուրիդանի ավանակի վիճակում է»: Ի՞նչ է նշանակում սա: Բուրիդանի ավանակըն ինչո՞վ է տարբերվում իր ցեղակիցներից: Ո՞վ է Բուրիդանը:

Ուշ միջնադարի փիլիսոփաները առաջ են քաշում մի թեորիա, ըստ որի կենդանի էակների արարքները կախված են ոչ թե նրանց սեփական կամքից, այլ բացառապես արտաքին պայմաններից: Ընդունված է ասել, որ գիտնական Բուրիդանը, որ ապրել է 16-րդ դարում Ֆրանսիայում, այդ միտքը հաստատել է հետևյալ օրինակով: Վերցնենք մի քաղցած ավանակ և նրա մռութից միանգամայն հավասար հեռավորության վրա դնենք ճիշտ և ճիշտ իրար հավասար երկու խուրձ խոտ: Ավանակը ոչ մի հիմք չունի նախընտրել նրանցից մեկը կամ մյուսը, չէ՞ որ երկուսն էլ ճիշտ և ճիշտ նման են իրար: Նա չի կարող դունչը մեկնել ո՛չ մեկին, ո՛չ էլ մյուսին և կսատկի քաղցից:

Հայտնի չէ, թե Բուրիդանի հետ չհամաձայնողները արդյոք արե՞լ են նման փորձ՝ ստուգելու համար նրա թեորիան, բայց այդ ժամանակից ի վեր անվճռական, տատանվող մարդկանց հաճախ անվանում են «Բուրիդանի ավանակ» (թեպետ Բուրիդանի աշխատություններում ոչ ոք այդպես էլ չի գտել նրան վերագրվող օրինակը: Լեզվի մեջ ոչ հազվադեպ մի սխալ):

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



# Որդան կարմիր

ԱԼԲԵՐՏ ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

*Անհիշելի ժամանակներից մարդիկ գույներ են փնտրել: Գույներ, որ չխունանան, որ ջերմացնեն աշուն ու ձմեռ, որ ուրախություն պարգևեն:*

*Եվ նրանք խոտեր ու ծաղիկներ հավաքեցին: Ծառերի տերևներ ու արմատներ: Չորացրին, մանրեցին, խառնեցին իրար, եփեցին, գույներ ստացան տեսակ-տեսակ՝ լաջվարդ, խնկի, խնձորածաղկի, յասամանի... Իսկ պուրպուր կարմիր ու ծիրանի՝ երկար փնտրեցին: Փնտրեցին ու գտան վերջապես որդան կարմիրը: Ո՞վ գտավ: Ե՞րբ, ո՞րտեղ: Ոչ ոք չի կարող ասել:*

*Այդ հրաշալի ներկի մասին առաջին անգամ հիշատակվել է «Աստվածաշունչ» գրքում: Դա հնագույն ժողովուրդների կյանքի ու նրանց հավատալիքների մի ժողովածու է, որ կազմվել է մեզանից երկու հազար տարի առաջ: Այնտեղ՝ Բաբելոն քաղաքի կործանման մասին խոսելիս, նկարագրված է Բաբելոնի շքեղությունը, որի զարդարանքներից մեկը եղել է որդան կարմիրը. «Վա՜յ, վա՜յ մեծ քաղաք, որ բեհեզ և ծիրանի, և որդան կարմիր էիր հագած, և ոսկով, և ազնիվ քարերով, և մարգարիտներով զարդարված: Որովհետև մեկ ժամվա մեջ այդչափ մեծությունը ավերակ եղավ»:*

*Հին և միջին դարերի հայ, հույն, հռոմեացի և արաբ պատմիչների, գիտնականների աշխատություններում նույնպես տեղեկություններ կան որդան կարմիրի մասին: Բայց բոլոր երկրները չէ, որ կարողացել են զբաղվել որդան կարմիրի մշակությամբ: Այդ արքայական ներկի հումքի հայթայթումով, նրա մշակումով ու արտահանությամբ հռչակված էր Հայաստանը: Շատ ժողովուրդներ մեր երկիրը ճանաչել են որպես որդան կարմիրի հայրենիք:*

*«Հայկական ներկի» ծննդավայրը հայոց «միջնաշխարհն» է՝ Արարատյան դաշտը. «ի նմանէ, յԱրարատայ ծնեալ որդանն ի զարդ կարմրատեսիլ գունոցս»: Այսպես է գրել հինգերորդ դարի պատմիչ Ղազար Փարպեցին իր «Հայոց պատմություն» գրքում:*

*Դարեր առաջ հայ ներկարար վարպետներն ու նրանց օգնականները, ծանր աշխատանքով, մեջք խոնարհած, հողի երեսից, սիզախոտերի վրայից, մեկիկ-մեկիկ հավաքել են ոսպի չափ մանր միջատներ: Հետո, հատուկ միջոցներով սատկեցրել են դրանց, ճարպը հեռացրել, մշակել քիմիական եղանակով և ստացել կենդանական ծագում ունեցող մուգ և պայծառ կարմիր ներկ, որի գործածելն ու վաճառելը թագավորների մենաշնորհն է եղել: Նրանց ծիրանիները, որ գցել են իրենց ուսերին, ներկված է եղել որդան կարմիրով: Հետազոտողների վկայությամբ, մեր հին քաղաքամայր Արտաշատում գոյություն են ունեցել պալատին ենթակա թագավորական ներկատներ: Ամեն ինչ, պետական գաղտնիքի պես, մնում էր արհեստանոցների չորս պատերի մեջ: Վաճառքի էր հանվում պատրաստի ներկը և նրանով ներկված գործվածքեղենը:*

*Որդան կարմիրը մեծ համբավ ուներ միջազգային տոնավաճառներում: Այդ ներկը ուրախության ու երջանկության նշան էր մեր ժողովրդական տոնախմբություններում: Դրանով զուգվում էին մրցախաղերի ելած հայ պատանիներն ու աղջիկները: Որդան կարմիրով էին ներկված արքայական դրոշները: Որդան կարմիրով պատրաստված մելանով էին ստորագրում հայոց թագավորները: Այդ ստորագրություններից մեկը դուք այսօր էլ կարող եք տեսնել մեծավաստակ գիտնական և բանաստեղծ Ղևոնդ Ալիշանի «Հայապատում» ստվարածավալ գրքի 485-րդ էջում: Այնտեղ կարմիր որդանով գրված է. «Լևոն թագավոր հայոց», իսկ եթե այցելեք Մեսրոպ Մաշտոցի անվան հայ հին ձեռագրերի մատենադարանը, ապա դուք ձեր աչքերով կտեսնեք այնպիսի մագաղաթյա գրքեր, որոնց նկարազարդումները կատարված են որդանով: Ապշեցուցիչ թարմությամբ են բուրում հարյուրավոր տարիներ գոյատևած այդ նկարների գույները: Եվ, վերջապես, ժողովրդի հիշողության մեջ երկու հազար տարի շարունակ պահպանվել է այն զրույցը, թե որդան կարմիրով են բուժվել շատ ծանր հիվանդություններ...*

*Երկու հազար տարի... Որքան փոթորիկներ են անցել Հայաստան աշխարհի վրայով: Ժամանակի ընթացքում Արարատյան դաշտից նվազել, գրեթե անհետացել է սիզախոտը: Ասես գետնի տակն են անցել միջատները: Թվում էր, թե ամեն ինչ մատնվել է անդարձ կորստյան: Բայց ոչ...*

*150 տարի առաջ Էջմիածնի վանքում մի վանական՝ Սահակ Ծաղկարար անունով, երկար տարիներ*



## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՈՒՍՄԱՆ ԳԵՐԱԶԱՆՑԻԿՆԵՐԻ ԱՆԴՐԱՆԻԿ ՀԱՎԱՔԸ

ՀԼԿԵՄ Կենտկոմը և ՀՍՍՀ լուսավորության մինիստրությունը կազմակերպեցին գերազանցիկ բարձր դասարանցիների հանրապետական հավաք՝ «Գիտելիքները պետք են կյանքում, ինչպես հրացանը՝ մարտում» նշանաբանով: Հավաքը նվիրված էր ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած հաղթանակի 30-ամյակին:

Առավոտյան հավաքի մասնակիցները ծաղկեպսակներ դրին մեծ առաջնորդի՝ Վ. Ի. Լենինի հուշարձանին: Հայֆիլհարմոնիայի համերգային փոքր դահլիճում տեղի ունեցավ հավաքի հանդիսավոր բացումը: Հյուրեր էին հրավիրված Կիևից, Մոլդավիայից, Կերչից: Հավաքի մասնակիցներին ողջունեցին ՀՍՍՀ լուսավորության մինիստր Ս. Հախումյանը և ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղարը: Հայրենական պատերազմի մասնակից, գնդի բժիշկ Ռուզաննա Լալայանը դպրոցականներին պատմեց Լենինգրադի խիզախ պաշտպանների մասին. 500 հազար երիտասարդներ սովի, սառնամանիքի, հաճախակի կրկնվող համաճարակային հիվանդությունների պայմաններում 900 օր հերոսաբար պաշտպանել են քաղաքը: Նրանցից շատերը վիրավորվել են, ընկել, բայց չեն հեռացել կրակագծից:

Արկերի ու ռումբերի տարափի տակ երիտասարդները 700 կիլոմետր հակատանկային խրամատ են փորել, որը հանդիսացել է թշնամու ռազմական տեխնիկայի համար անհաղթահարելի սպարիսպ:

Լենինականի № 4 դպրոցի 10-րդ դասարանի աշակերտ Հովհաննես Մելքոնյանը պատմեց, որ քաղաքի 8000 բարձր դասարանցիներից 140-ը սովորում են լավ և գերազանց գնահատականներով, քառասունը արժանացել են ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Գերազանց ուսման համար» կրծքանշանի: Անցյալ տարվա ընթացքում դպրոցականները մասնակցելով քաղա-

*զբաղվեց որդան կարմիրով: Փնտրեց, գտավ այն հողակտորները, ուր ապրում էր որդան կարմիրը, հավաքեց, փորձեր արեց: Երկար, շատ երկար տանջվեց ծեր վանականը, մինչև որ, ինչպես ինքն է գրել իր դիտողությունների տետրում, հասավ արդյունքի: Նա այդ մասին հայտնեց Պետերբուրգ: Կառավարությունը բարձր գնահատեց Սահակ Ծաղկարարի ծառայություններն իր հայրենիքին: Փորձարար վարպետը պարգևատրվեց ադամանդազարդ թանկարժեք մատանիով և նրան ցմահ թոշակ նշանակվեց: Ակադեմիայից գիտնականներ եկան Հայաստան և նրա օգնությամբ սկսեցին ուսումնասիրել որդան կարմիրի ծննդավայրը:*

*Բայց մեռավ Ծաղկարարը՝ գործը ավարտին չըհասած: Հետագայում կորան նաև նրա թղթերից այն էջերը, որտեղ նկարագրված էին իր փորձերը, ներկ ստանալու եղանակը... Թվում է, թե նորից ծովն ընկավ որդան կարմիրի գաղտնիքը: Սակայն Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո կառավարության որոշմամբ ստեղծվեց հատուկ լաբորատորիա, որն ուսումնասիրում է որդան կարմիրի ստացման եղանակները:*

*Հայ գիտնականներն անխոնջ համառությամբ չափչփեցին ողջ հովիտը և դժվարությամբ հայտնաբերեցին հողակտորներ Արարատի, Արտաշատի, Էջմիածնի ու Հոկտեմբերյանի շրջաններում, ուր պահպանվել է որդան կարմիրը: Առայժմ՝ չորս հազար հեկտար: Որոնումները շարունակվում են Մեծամորից մինչև Խոր-վիրապ և ավելի լայն շրջագծով:*

*Միջատները մասսայաբար հողի երես են դուրս գալիս սեպտեմբեր ամսին՝ սկզբից մինչև վերջը: Դուրս են գալիս վաղ առավոտյան՝ մինչև կեսօր, հետո նորից անհետանում են:*

*Չորս ու կես ժամում կարելի է հավաքել ընդամենը 200 գրամ: Մեկ կիլոգրամ նոր որդան կարմիր ունենալու համար՝ պետք է հավաքել հիսուն հազար հատ...*

*Որդան կարմիրը օգտագործվում է արդուզարդի, նկարչության, տպագրական գործի, թեթև ու սննդի արդյունաբերության մեջ և ժողովրդական տնտեսության այլ բնագավառներում:*

*Ուրեմն, որոնենք, գտնենք, պահպանենք մեր որդան կարմիրը: Եվ առաջին հերթին նրանք, ովքեր ապրում են Արարատյան հարթավայրում, ովքեր դաշտային աշխատանքների ժամանակ օգնում են իրենց ծնողներին:*

*Սպասում ենք ձեր տեղեկություններին:*

քի բարեկարգման ու շինարարական աշխատանքներին, 15 հազար ռուբլու օգուտ են տվել երկրին:

Ուսման գերազանցիկները մեծ թիվ են կազմում Նաև Նոյեմբերյանի շրջանում: Նրանցից 3 հիսունը արժանացել են Համ-ԼԿԵՄ Կենտկոմի կրծքանշանի: Շրջանի 23 արտադրական բրիգադների 850 անդամներ անցյալ տարի չորս հազար տոննա պտուղ են հավաքել, 200 հեկտարից ավելի եգիպտացորեն և 2150 հեկտար խոտ են հնձել: Աշակերտների ուժերով բոլոր գյուղերում ստեղծվել են լորենիների պուրակներ, գյուղամիջյան ճանապարհները ծառապատվել են: Այս և կատարած այլ աշխատանքների մասին հավաքի մասնակիցներին պատմեց Նոյեմբերյանի Վարդան Ատրըյանի անվան № 2 դպրոցի տասներորդ դասարանի աշակերտուհի Հասմիկ Ամիրաղյանը:

Մեծ տպավորություն գործեց հերոս քաղաք Կերչի պատվիրակներից 8-րդ դասարանցի Լենա Կուբրիշենկոյի ելույթը:

— Մեզ համար շատ հուզիչ է այսօր,— ասաց նա:— Մեզ բախտ վիճակվեց լինել այն երկրում, որի պանծալի զավակներից շատերը իրենց կյանքը նվիրաբերեցին Կերչի ազատագրմանը: Քաղաքի բնակիչները սրբությամբ ու երախտագիտությամբ են հիշում հայ մարտիկներին: Մեր կարմիր հետախույզների ջոկատները շարունակում են նրանց հետքերով գնալ և նոր լույս սփռել անհայտ հերոսների կյանքին: Թող հավերժ պայծառ մնան նրանց անունները:

Դահլիճը ոտքի կանգնեց ու լռությամբ հարգեց զոհվածների հիշատակը:

Հավաքի մասնակիցներին հաջորդ առավոտյան ընդունեցին կուսակցության ու կառավարության ղեկավարները: Պատվիրակները պատմեցին իրենց կատարած աշխատանքների, ուսման մեջ հասած հաջողությունների, ապագա մասնագիտության ընտրության և այլ խնդիրների մասին:

ՀԿԿ ԿԿ քարտուղար ընկ. Թովմասյանը զրույցի ժամանակ հետաքրքիր տեղեկություններ հայտնեց հանրապետության արտադրական, կուլտուրական կյանքի, քաղաքների ու գյուղերի զարգացման հեռանկարների մասին:

— Մեր կուսակցությունն ու կառավարությունը մեծ սպասելիքներ ունեն այսօրվա դպրոցականներից,—ասաց ընկ. Թովմասյանը:— Չլուծված հարցեր ու բարդ խնդիրներ կան գիտության, տեխնիկայի, առողջապահության և այլ բնագավառներում: Ձեզանից շատերը վաղվա ինժեներնե՞ր, գիտնականներ ու ղեկավար աշխատողներ են դառնալու: Վաղվա ձեր կոչմանն արժանի լինելու համար, դուք այսօր պետք է լավ սովորեք, գիտելիքների հարուստ պաշար ձեռք բերեք, որպեսզի կարողանաք դառնալ ավագ սերնդի արժանի փոխարինողներ:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

## ԱՐԵՎԸ, ԾՈՎԸ ԵՎ ԲԺԻՇԿՆԵՐԸ

Մի անգամ ամերիկյան խմբի տղաներից մեկը եկավ ինձ մոտ ու խնդրեց ուղարկել վիրահատության:

— Ի՞նչ է պատահել,— հարցրի ես:

— Հեռացրե՛ք իմ կույր աղիքը... Ընկերոջս՝ նույնպես: Դուք հիշո՞ւմ եք նրան:

— Բայց քո կույր աղիքը բորբոքված չէ և չի անհանգստացնում:

— Համենայն դեպս... Ես կուզենայի հեռացնել... որպեսզի տնտեսեմ ծնողներիս փողը: Մեզ մոտ՝ Ամերիկայում, վիրահատությունը շատ թանկ է:

Ես հիշեցի այդ տղային: Այդ նա էր, որ հերթափոխի սկզբում համառորեն հրաժարվում էր ատամները բուժելուց: Սկզբում չէինք կարողանում խուսափելու պատճառն իմանալ: Ատամնաբույժի սենյակը ամենաժամանակակից ձևով է կահավորված, բժիշկները հոգատար են և ուշադիր: Թվում էր, թե հրաժարվելու պատճառ չպետք է լիներ: Բայց, այնուամենայնիվ, այն կար ու միանգամայն մեզ անհասկանալի. տղան վախեցել էր, թե բուժելու համար նրանից դոլարներ կպահանջեն կամ բուժելու հաշիվը ծնողներին կուղարկեն:

Ծիծաղելով մենք սկսեցինք բացատրել նրան, որ Սովետական Միությունում բուժումը անվճար է, իսկ նա դժվարանում էր հավատալ... Եվ ահա արդյունքը. խնդրում է «համենայն դեպս» վիրահատել:

Այնուհետև նման դեպքերի հաճախակի էինք հանդիպում, բայց չէինք զարմանում, այլ աշխատում էինք փոքրիկ հիվանդներին հանգստացնել: Նրանք սկսում էին հաճույքով բուժվել: Ես նույնիսկ կասեի՝ մեծ ցանկությամբ, քան մեր՝ սովետական երեխաները, որոնք դժկամությամբ էին բուժկետ գնում: Պատճառը և՛ անհոգությունն էր, և՛ անպատասխանատու վերաբերմունքը սեփական առողջության նկատմամբ, իսկ երբեմն էլ ուղղակի ալարում էին: Դրա համար էլ բոլորին չէ, որ հաջողվում էր կարգավորել անձնական հիգիենան:

*Ն. ԿԱԴՆԻԿՈՎԱ*

*1961—1973 թվականների Արտեկի գլխավոր բժիշկ*




# «Վերադարձրե՛ք մեր մանկությունը»

Այդպիսի ցույց Վաշինգտոնը դեռ չէր տեսել: Դեպի Կապիտոլիում էին գնում տասնյակ հազարավոր երեխաներ: Նրանք ամուր բռնել էին միմյանց ձեռքերը և երգում էին նեգրական հնագույն «Երեխաների արցունքները քարեր են այրում» երգը:

Ամերիկյան գիտնական սոցիոլոգները, որոնք ուսումնասիրում են երեխաների դրությունը Ամերիկայում, այսպիսի հետևության հանգեցին. «Ամերիկան պատերազմ է մղում իր իսկ երեխաների դեմ: Շատ ընտանիքներ ու երեխաներ,— գրում են նրանք,— գտնվում են թշվառության մեջ, այնպիսի ծայրահեղ թշվառության, որը սպառնում է ազգի ապագային: Միլիոնավոր ամերիկյան երեխաներ զրկված են ամենահիմնական՝ կրթություն ստանալու իրավունքից»:

...Երեխաները գնում էին Կապիտոլիում: Նրանց ձեռքերի պաստառներին գրված էր. **«ՎԵՐԱԴԱՐՁՐԵՔ ՄԵՐ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆԸ»:**

Կապիտալիստական աշխարհում քառասուն միլիոն երեխաներ պետք է աշխատեն, որ քաղցից չմեռնեն:

Երեք հարյուր միլիոն երեխաներ ապրում են աղքատության մեջ, վատ են սնվում, ետ են մնում նորմալ աճից:

Բոլոր երեխաները պետք է սովորեն: Սակայն Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի շատ երկրներում տասից մեկ երեխան է, որ տասնմեկից մինչև տասնհինգ տարեկան հասակում դպրոց է հաճախում:

Հաշված է, որ 1980 թվականին աշխարհում ութ հարյուր երեսուն միլիոն անգրագետներ կլինեն:

Կապիտալիստական աշխարհում յուրաքանչյուր րոպեում ծնվում են երկու հարյուր երեխաներ: Նրանցից քառասունը մահանում է կյանքի առաջին տարում: Կենդանի մնացածներից շատերը բժշկական օգնություն չեն ստանում և դրա համար էլ հաճախակի հիվանդանում են:

---

## ԱՌԱԿ

*ԱՐԵՎԱԼՈՒՅՍ ՄԻՐԱՍ*

Գայլերը ջաքում
Մանկեցին մարում:
Հուսահատ ու խեղճ
Մայում էր մաքին,
Նույն պահին վագրը
Հասավ ոհմակին...

«Ո՜վ գիշատիչներ,
Դաժան մի՛ եղեք,
Ձեզնից ձագերին
Այդքան մի՛ նեղեք»:—
Ասաց ու մաքուն
Ձեռքերից տարավ,
Տարավ և իսկույն
Մի պատառ արավ:

## ՊԱՀՊԱՆԵՑԵ՛Ք ԱՉՔԵՐԸ

*Ի՜նչ անփութությամբ են շատ երիտասարդներ իրենց աչքերը տանջում, նրան անսահման ծանրաբեռնելով: Աշխատանքի գնալ-գալիս կարդում են մետրոյում, ավտոբուսում, տրոլեյբուսում: Ծնողներից ձեռքերը դողում են և հարկադրված են լինում դժվարությամբ փնտրել յուրաքանչյուր տառ:*

*Մեծ բեռնվածության դեպքում աչքերը կորցնում են իրենց բնական փայլը, նրանց շուրջը երևան են գալիս կարմիր շրջանակներ, աչքերի տակ պարկեր են գոյանում:*

*Մի խոսքով, լինում է այն, ինչից պետք է զգուշանալ:*

*Ուզում եմ, թանկագի՛ն բարեկամներ, ձեզ մի քանի խորհուրդներ տալ:*

*Հետևեցե՛ք, որպեսզի կարդալիս, գրելիս, ձեռքի աշխատանք կատարելիս լուսավորությունը լավ լինի:*

*Եթե աչքերը գերհոգնությունից սկսում են ցավել, տվեք նրանց մի փոքր հանգիստ: Դա լավ է տեսողության համար: Բացի այդ, աչքերը փակելով կկարողանաք ավելի լավ կենտրոնանալ:*

*Պաշտպանական ակնոցի միջոցով ձեր աչքերը պահպանեցեք պայծառ լույսից:*

*Աշխատանքի գնալ-գալիս մի՛ կարդացեք տրանսպորտում:*

*Եթե գնում եք բաց մեքենայով կամ շարժիչավոր նավակով, հեծանվով կամ մոտոցիկլետով, անպայման դրեք պաշտպանական ակնոց:*

*Ժամերով մի՛ կանգնեք գնացքի բաց պատուհանի մոտ:*

*Աչքերի լվանալն ու թրջոցներ դնելը շատ ժամանակ չեն պահանջում: Ինչպես դեմքի մաշկը, այնպես էլ աչքերը ամեն օր փոշոտվում ու ծխոտվում են: Խորհուրդ է տրվում ամեն օր աչքերը լվանալ փափուկ՝ եռացրած ջրով:*

*Ինչպե՞ս լվանալ աչքերը: Դեմքը իջեցրեք ջրի մեջ և աչքերը բացեք, որպեսզի լվացվի աչքի խնձորակը: Պահանջվում է մի քանի րոպե, որպեսզի նրանք առողջ ու պարզ դառնան: Եվ թող աչքերի ամենօրյա լվացումը ձեզ համար դառնա այնպիսի անհրաժեշտություն, ինչպես ատամներ մաքրելը:*

*Եթե աչքերը հոգնածությունից կարմրել են, ավելի լավ է բորաթթվի լուծույթով լվանալ (այն վաճառվում է բոլոր դեղատներում): Այդ լուծույթով թրջում եք բամբակը և գլուխը ետ տանելով բորաթթուն կաթեցնում եք աչքերի մեջ:*

*Հատկապես պետք է զգուշանալ աչքերի և կոպերի բորբոքումից: Այդպիսի դեպքում չփորձեք ինքնուրույն բուժել, անհապաղ դիմեք բժշկին:*

*Մի՛ վախեցեք ակնոցից: Երբ տեսողությունը թուլանում է, ակնաբույժի դեղատոմսով անմիջապես ձեռք բերեք ակնոց: Կարճատես աչքերը, միևնույն է, գեղեցիկ չեն լինի, եթե անընդհատ կկոցվում են: Դրա հետևանքով աչքերի շուրջն առաջանում են վաղաժամ կնճիռներ:*

*Ակնոցը ո՛չ ծերացնում, ոչ էլ այլակերպում է դեմքը և նույնիսկ մոդայիկ է: Ակնոցի շրջանակը պետք է համապատասխանի ձեր արտաքինին, սանրվածքին, մազերի գույնին և նույնիսկ հոնքերի ձևին:*

*Եթե ձեր դեմքը քառակուսի է, կլոր շրջանակով ակնոց կրեք: Լայն դեմքի դեպքում գերադասելի է, որ ապակիների հորիզոնական սռնակը կարճ լինի, իսկ ուղղահայացը՝ երկար: Նեղ և երկար դեմք ունենալու դեպքում՝ ընդհակառակը: Ակնոցը չպետք է պառկի կամ հենվի այտերին: Եթե ձեր աչքերը իրար մոտիկ են, խորհուրդ եմ տալիս ընտրել պաճուճված ակնոց, կողքերից փոքրիկ թևիկներ: Մանր դիմագծեր և նիհարավուն դեմք ունեցողին բոլորովին չի սազում մեծ ակնոցը:*

*ՎԱԼԵՆՏԻՆԱ ՍՊԻՐԻԴՈՆՈՎԱ*
*Ակնաբույժ-վիրաբույժ, բժշկական գիտությունների թեկնածու*

# ՇԱԽՄԱՏԻ ՉԵՄՊԻՈՆՆԵՐԸ



*Վիլհելմ Ստեյնից*

15-րդ դարում ապրող ուզբեկ մեծ բանաստեղծ Ալիշեր Նավոյին ասել է. «Շախմատը ազնիվ հակառակություն է, հակառակություն-մրցություն, և երբ վերջանում է խաղը, հակառակությունից ոչ մի հետք չի մնում»: Արդեն հազար հինգ հարյուր տարի մարդիկ շախմատ են խաղում և միշտ ու բոլոր երկրներում եղել են այդ խաղը գնահատողներ ու չեմպիոններ: Հեռու անցյալում ևս եղել են նշանավոր վարպետներ, բայց շախմատը միջազգային խաղ է դարձել 1851 թվից, երբ Լոնդոնում անցկացվեց միջազգային մրցաշար:

1886 թվին մրցամարտ տեղի ունեցավ մի շարք միջազգային մրցումների հաղթողներ Վիլհելմ Ստեյնիցի և Յոհան Ցուկերտորտի



*Էմմանուել Լասկեր*



Խոսե Ռաուլ Կապաբլանկա

միջև: Մրցամարտը անցկացվեց Ամերիկայում՝ Նյու-Յորք, Սան-Լուի, Նոր-Օռլեան քաղաքներում, որն ավարտվեց Ստեյնիցի հաղթանակով: Այսպես, շախմատի մեծ տեսաբան Ստեյնիցը նվաճեց աշխարհի առաջին չեմպիոնի կոչումը: Այդ ժամանակ նա հիսուն տարեկան էր: Մրցամարտը ուշագրավ էր և այն պատճառով, որ առաջին անգամ գործածվեց ցուցադրական վահանակ: Ինչպե՞ս էր այն ժամանակ անցկացվում աշխարհի առաջնությունը: Չեմպիոնը ինքն էր անվանում մրցակիցներին և նրանց հետ համաձայնության գալիս խաղի պայմանների մասին: Ստեյնիցը իր կոչումը պահպանեց մինչև 1894 թիվը, մինչև Էմմանուել Լասկերից պարտվելը:



Ալեքսանդր Ալյոխին

Աշխարհի երկրորդ չեմպիոն Լասկերը փիլիսոփայության դոկտոր էր, մաթեմատիկայի պրոֆեսոր, գրականագետ ու դրամատուրգ: «Ես հարգում եմ Լասկերին»,— ասել է Ալբերտ Էյնշտեյնը: Չեմպիոնին հարգում էր նաև շախմատային ողջ աշխարհը: 1921 թվին կուբացի դիվանագետ Խոսե Ռաուլ Կապաբլանկան հաղթելով Լասկերին, դարձավ աշխարհի երրորդ չեմպիոնը: Նա շախմատ խաղալ սովորել է մանուկ ժամանակ: Հինգ տարեկանում մրցում էր մեծահասակների հետ, իսկ տասը տարեկանում դարձավ Կուբայի չեմպիոն: «Կապաբլանկայի խաղը հիացնում է տրամաբանությամբ,— մրցամարտից հետո գրել է Լասկերը:— Դա կայուն ինքնակատարելագործման, անշեղ նպատակասլացության արդյունք է»:



Մաքս Էյվե

Շատերը Կապաբլանկային անպարտելի էին համարում, բայց 1927 թվին Ալեքսանդր Ալյոխինը մրցամարտում հաղթեց նրան: Ալյոխինը երկար ժամանակ մնաց աշխարհի չեմպիոն: Միայն 1935 թվին նա մրցամարտը տանուլ տվեց հոլանդացի Մաքս Էյվեին, սակայն երկու տարի անց նրանից իրեն վերադարձրեց պատվավոր կոչումը: Ալյոխինը աշխարհի չեմպիոն մնաց մինչև կյանքի վերջը՝ 1946 թիվը: Նա մահացավ անհաղթ: 1948 թվին ուժեղագույն գրոսմայստերների մասնակցությամբ անցկացվեց մրցաշար-մրցամարտ՝ աշխարհի վեցերորդ չեմպիոնին որոշելու համար: Հաղթեց Միխայիլ Բոտվիննիկը:



Միխայիլ Բոտվիննիկ

1948—1972 թվերին աշխարհի չեմպիոններ են դարձել սովետական շախմատիստները. Միխայիլ Բոտվիննիկ, Վասիլի Սմիսլով, Միխայիլ Տալ, Տիգրան Պետրոսյան, Բորիս Սպասսկի: 1972 թվին Սպասսկին աշխարհի առաջնության մրցամարտում պարտվեց ամերիկացի տաղանդավոր գրոսմայստեր Ռոբերտ Ֆիշերից:



Վասիլի Սմիսլով

Երեք տարի անց Ֆիշերը պետք է պաշտպաներ իր կոչումը: Նրա մրցակիցն էր երիտասարդ շնորհալի շախմատիստ Անատոլի Կարպովը: Սակայն Ֆիշերը խախտե-

յով մարդկային էթիկան, պահանջեց իր համար նպաստավոր, իսկ մրցակցի համար աննպաստ պայմաններ: Ամբողջ աշխարհի շախմատի երկրպագուները դատապարտեցին Ֆիշերի արարքը: Այնուհանդերձ, Ֆիշերը խուսափեց Կարպովի հետ մրցել: Շախմատի միջազգային ֆեդերացիան աշխարհի չեմպիոն հռչակեց քսանչորսամյա Անատոլի Կարպովին:



Միխայիլ Տալ

## ԱՍՈՒՅԹՆԵՐ ՇԱԽՄԱՏԻ ՄԱՍԻՆ

1. Շախմատը ոգով թույլ մարդկանց համար չէ: Այն բարդ է և պահանջում է անխոնջ աշխատանք:

Վ. ՍՏԵՅՆԻՑ

2. Շախմատային խաղում ուսումնասիրությունները, բարեբախտաբար, վերաբերվում են այն խնդիրներին, որոնք դեռևս լրիվ չեն լուծված: Այն խաղը, որտեղ ամեն ինչ պարզ է, կորցնում է հետաքրքրությունը:

ԷՄ. ԼԱՍԿԵՐ

3. Շախմատիստների մեծ մասը չի սիրում պարտվել, և պարտությունը համարում է խայտառակություն: Դա սխալ տեսակետ է: Նա, ով ուզում է կատարելագործվել, պետք է իր պարտությունները դաս համարի և սովորի, որպեսզի ապագայում չկրկնի նույնը:

Խ. Ռ. ԿԱՊԱԲԼԱՆԿԱ

4. Ինձ համար շախմատը ոչ թե խաղ է, այլ արվեստ:

ԱԼ. ԱԼՅՈԽԻՆ



Տիգրան Պետրոսյան

5. Շախմատային դասագրքերի խնամքով ուսումնասիրությունը միայն այն ուղիներն է հայտնում, որոնցով պետք է սովորել ինքնուրույն մտածել:

Մ. ԷՅՎԵ

6. Պատմության մեջ երբեք շախմատը այնքան լրջորեն չեն ուսումնասիրել, այնպես եռանդով չեն խաղացել, ինչպես այժմ խաղում են սովետական վարպետները: Մեզ համար շախմատը ստեղծագործական կյանք է:

Մ. ԲՈՏՎԻՆՆԻԿ



Բորիս Սպասսկի

7. Պետք է ձգտել շախմատային մտահորիզոնի լայնությանը, այնպիսի ուղիներ որոնել, որոնք կարող են շախմատը առաջ մղել:

Վ. ՍՄԻՍԼՈՎ



Ռոբերտ Ֆիշեր

8. Ամեն շախմատիստ իր մրցամարտային երջանկության դարբնողն է:

Մ. ՏԱԼ

9. Շախմատում անհաս երազանքն է խաղալ առանց սխալների: Հենց անսխալ խաղալու ձգտումն էլ ամենագրավիչն է այս խաղում:

Տ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

10. Ինձ հրապուրում են անհայտությունը, հնարավորությունների անսպառ հարստությունը, հորինման գործունեությունը, որոնք ուղեկցում են շախմատային ստեղծագործությանը:

Բ. ՍՊԱՍՍԿԻ



Անատոլի Կարպով

11. Շախմատը, անշուշտ, արվեստ է, բայց այդ մասին ես չեմ մտածել:

Ռ. ՖԻՇԵՐ

12. Շախմատը իմ կյանքն է:

ԱՆ. ԿԱՐՊՈՎ




## ԴԵՌ ՎԱՂ Է ՄԱՐՍ ԹՌՉԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Տիեզերանավում երկար ժամանակ մնալու դեպքում մարդու ոսկորները բավականաչափ կալցիում են կորցնում: Այսպիսի եզրակացության եկան ամերիկացի բժիշկները, երբ վերադառնալուց հետո ուսումնասիրեցին «Սկայլեբ» տիեզերական կայանի մասնակիցներին: Տիեզերքում մի ամիս անցկացնելուց հետո, տիեզերագնացները կորցրել էին 3—4 տոկոս կալցիում, քանի որ անկշռելիության պայմաններում նրանց ոսկորները ոչ մի ծանրաբեռնվածություն չէին զգում:

Գիտնականների կարծիքով, թռիչքը դեպի Մարս տևելու է մեկուկեսից-երեք տարի: Կալիֆոռնիայի համալսարանի դոկտոր Լյուտվակը ենթադրում է, որ այդ ընթացքում կալցիումի կորուստը այնքան շատ կլինի, որ տիեզերագնացների ոտքերը կբարակեն մակարոնի չափ: Այնպես որ, քանի դեռ չի գտնված կալցիումի կորուստը չեզոքացնելու միջոց, հնարավոր չէ մարդկանց թռիչքը Արեգակնային համակարգի այլ մոլորակներ:

## ԸՆՏԱՆԻՔԸ ԵՎ ԴՊՐՈՑԸ

Նոր ուսումնական տարվա սկզբից Հունգարիայի 90 դպրոցներում անցնում են նոր առարկա. «Ընտանեկան կյանքի նախապատրաստում»: Առայժմ նոր առարկան ուսումնական ծրագրի մեջ մտցված է փորձնական կարգով: Եթե արդյունքները դրական լինեն, հաջորդ երեք տարում այդ առարկան կանցնեն երկրի բոլոր դպրոցներում, այնուհետև՝ ինստիտուտներում:

Նոր առարկայի թեմաներից են. «Պատանիների և աղջիկների բարոյական դաստիարակությունը», «Փոխհարաբերությունները ընտանիքում», «Ընտանեկան կյանքի պլանավորումը» և այլն:

# ԿՐԻԱՆԵՐԻ ՄԵՆԱՄԱՐՏԸ

*Դ. ՌԱԿԻՏԻՆ*

Թը՛խկ-թը՛խկ-թը՛խկ՝ ռավաղների խորքից լսվում են խուլ ձայներ, կարծես, ինչ-որ մեկը երկու փայտի կտոր իրար է խփում:

Հետո ձայները լռում են, իսկ քիչ անց նորից լսվում է՝ թը՛խկ-թը՛խկ...

Տարօրինակ է լսել այդ ձայները լայնատարած անապատի վաղորդյան լռության մեջ: Ի՞նչ է այս կամ ո՞վ է: Ծտապում եմ մոտենալ բարխանի վրա աճող կարմրանի փոքրիկ թփուտներին, որտեղից ձայներն են լսվում: Եվ ի՞նչ տեսնեմ. երկու արու կրիաներ մենամարտում են: Կենաց ու մահու ճակատամարտի մեջ ախոյաններից յուրաքանչյուրն ամեն գնով ձգտում էր հաղթել: Ամբարիշտ, թափ առած նրանք խփվում են մեկը մյուսին կրիաների մենամարտի չգրված օրենքների համաձայն և զարնվում զրահներով: Այդ խուլ թըխկ-թըխկն էր, որ գրավել էր իմ ուշադրությունը:



Մարտը ընթանում էր փոփոխական առավելությամբ և զգացվում էր, որ երկու կողմերն էլ համազոր ախոյաններ են: Ընդ որում ամեն մեկը ռինգում մենամարտող բռնցքամարտիկի նման աշխատում էր անսպասելի և ջախջախիչ հարված հասցնել մյուսին:

Ինչքան ժամանակ էին նրանք կռվել մինչև իմ գալը, ես չգիտեմ, բայց արդեն տասը րոպեից ավելի էր, որ նրանք մարտնչում էին իմ ներկայությամբ, իսկ ավարտը, կարծես, չէր երևում: Արդեն պատրաստվում էի գնալ, և մեկ էլ՝ թը՛խկ, և ախոյաններից մեկը գլուխկոնծի տալով թռչում է մի

## ԲԱՆՋԱՐԵՂԵՆԸ ԵՎ ՀՈԳԵԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Նորվեգացի գիտնական Օլաֆ Լինդստրեմը ուսումնասիրում է բանջարեղենի ազդեցությունը... մարդու հոգեբանության վրա: Եթե հավատանք պրոֆեսորին,



ապա սալաթը զարգացնում է երաժշտականությունը, սոխ պրասը՝ տրամաբանական մտածողությունը, գազարը և սպանախը տխրություն են բերում, կարտոֆիլը հանգստացնում է: Այդպիսով, ճաշասեղանի համար բանջարեղեն ընտրելը այնքան հեշտ գործ չպետք է կարծել:

*Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑԻ*

կողմ, ընկնում մեջքին և անզոր թափահարելով դեղնավուն եղունգներով մկանուտ թաթիկները, տխուր ճպճպացնում է իր մանր աչքերով: Ծուռ կըգա՞ փորի վրա, թե՞ ոչ: Չէ՛, չի կարողանում: Երևում է, ախոյանը իր զրահի առաջամասով ուժեղ հարված է հասցրել:

«Հանձնվե՞նք, բարեկա՛մ,—հարցնում եմ պարտվածին և ռինգի դատավորի նման հաշվում,—մեկ, երկու... հինգ... տասը»: Տեղից չի շարժվում: Առաջվա նման պառկած է մեջքին: Գրանցում եմ նրա պարտությունը և շրջում նորմալ դիրքի: Կկարողանա՞ արդյոք տեղից շարժվել: Իհարկե, անմիջապես դիմեց փախուստի:

Հաղթողը մեծահոգաբար նայեց փախչող թըշնամու ետևից և ծանրաքայլ, նաև թավալկանին կայտառ, սողաց դեպի նշանածը: Իսկ այս ի՞նչ է: Նշանածի մոտից անցավ դեպի ավազների մեջ թաքնված փոքրիկ կանաչ կոզյակը և կանգ առավ դեղին ծաղկի մոտ: Տեսնեմ, կծեց, պոկեց ցողունիկը, և ծաղիկը բերանում պահած, շարժվեց ուղիղ դեպի իրեն սպասող հարսնացուն:

Մտածեցի, թե, չլինի, խակապես, նվեր է տանում: Կվերցնի՞, արդյոք էգ կրիան նվերը: Վերցրեց: Քիչ պահեց ատամներով, հետո սկսեց ծամծըմել:

Այս եղելությունից հետո հատուկ հարգանքով եմ մտածում կրիաների մասին: Եվ հիմա, երբ որ լսում եմ այդ «թըխկ-թըխկ»-ը, էլ չեմ գնում պարզելու, թե ինչ ձայն է: Գիտեմ՝ բնության կանչն է դա և օգոստոսին արդեն ինչ-որ տեղ ավազների տակ, կրիայի դրած ձվերից դուրս կգան պստլիկ, ընկույզի չափ, կրիաներ: Եվ ավազի տակ թաղված կսպասեն գարնան գալուն:




Լույս է տեսնում 1925 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 11 Նոյեմբեր 1975 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


Հեղափոխության ճանապարհը . . . 2
Հոկտեմբեր — ՅՈՒ. ՍԱՀԱԿՅԱՆ . . . 3
Ապրիլյան մեկ օր — Մ. ՂՈՒԿԱՍՅԱՆ . . . 4
Աշուն — Է. ՄԻԼԻՏՈՆՅԱՆ . . . 5
Հրաշագործը — Կ. ԳԵՎՈՐԳՅԱՆ . . . 6
Հացը — Լ. ՍԱՐԳՍՅԱՆ . . . 7
Երկար չըջադարձեր կարճ ճանապարհին — Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ . . . 9
Սարեր — Գ. ԶԱՐԵՆՑ . . . 9
Թևավոր խոսքեր . . . 14
Որդան կարմիր — Ալ. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ . . . 15
Ուսման գերազանցիկների անդրանիկ ճամփը — Վ. ՄԽԻԱԿՅԱՆ . . . 17
Արեւ, ծովը և բժիշկները — Ն. ԿԱԴՆԻԿՈՎԱ . . . 17
«Վերադարձրեք մեր մանկությունը» . . . 18
Առակ — Ա. ՄԻՐԱՍ . . . 18
Գանդաննցեք աչերը — Վ. ՍՊԻՐԻԴՈՆՈՎԱ . . . 18
Շախմատի աշխարհի չեմպիոնները . . . 19
Ինչուկ . . . 20
Կրիաների մենամարտը — Դ. ՌԱԿԻՏԻՆ . . . 22
Դրսում անձրև էր — Ս. ԿՈՍՅԱՆ . . . 22


*Շապիկի առաջին էջը՝*

*Նկ. ԿԱՄՈ ԳՅԱՆՋՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05822: Պատվեր 2239: Տպաքանակ՝ 79 200: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 13/XI 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 10 Կ.

ԻՆԴԵՔՍ 77806

# ԴՐՍՈՒՄ ԱՆՁՐԵՎ ԷՐ

*ՍԱՄՎԵԼ ԿՈՍՅԱՆ*

Դրսում անձրև էր։
Դեղին ու կարմիր
Անձրևանոցով
Աշունն անցնում էր
Թախծոտ երգի պես,
Եվ մեկ էլ քամին
Անձրևանոցը խլեց ու փախավ,
Թռավ խենթի պես։
Պատառոտեց ու
Ցաղ տվեց ողջը
Փողոցներով մեկ.
Ու անձրևի տակ
Աշունը կծկվեց,
Կռացավ, փորձեց
Պատառիկները
Հավաքել մեկ-մեկ,
Ու այնպես թվաց,
Թե կատու դարձավ
Ու խնդրեց տխուր.
— Փոքրի՛կ, շուտ դո՛ւրս եկ,
Արի՛, ինձ տար տուն։

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆ*

## ՊԱՏԱՍԽԱՆ «ԳԻՐՆԵՐ» № 10.

ԳԱՂՏՆԱԳԻՐ.— «Գիրքը մարդու ամենամտերիմ ընկերն է կյանքի բոլոր շրջաններում»։

